# ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆ

Ուսումնական տարվա վերջին օրը, դասերից հետո, աշակերտուհիներից մեկը նստել էր դատարկ դասարանում, տուն չէր գնում:

— Ինչո՞ւ տուն չես գնացել,— հարցնում է ընկեր Խաչիկյանը:

— Չեմ ուզում, որ արձակուրդ լինի,— շշնջում է աղջիկը,— այդքան երկա՜ր ժամանակ ձեզ չեմ տեսնելու...

Աշակերտներից մեկը կորցրել էր գրիչը, շատ էր տխրել, մայրը նոր գրիչ գնեց, տվեց նրան:

— Ես իմ գրիչն եմ ուզում, ընկեր Խաչիկյանն էր նվիրել... ախր ոնց եղավ, որ կորցրի,— իրեն չէր ներում տղան:

Ամեն անգամ, երբ Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի ուսուցչուհի Նոյեմ Խաչիկյանը նոր դասարան է ընդունելիս լինում, երեխաներին առաջին անգամ դպրոց բերող ծնողներից յուրաքանչյուրը դիմում է դպրոցի դիրեկտորին.

— Խնդրում եմ երեխայիս ընկեր Նոյեմի դասարանում տեղավորեք:

— Թող երեխան ընկեր Նոյեմի մոտ լինի, թեկուզև «երեք» ստանա...

Ընկեր Նոյեմի դասավանդած դասարաններում աշակերտները գիտելիքներից բացի ձեռք են բերում ուրիշ շատ բան: «Եթե ընկերոջդ կարող ես ուղղել՝ ուղղիր, եթե ոչ՝ վատը մի խոսիր նրա մասին», ահա ընկեր Նոյեմի նշանաբաններից մեկը:

Նրա դասավանդած բոլոր դասարաններում ոչ միայն աշակերտներն են իրար սիրում ու մտերիմ, այլև նրանց ծնողները: Եվ այս բոլորը շնորհիվ, գուցե նաև հանուն ընկեր Խաչիկյանի՝ ընկեր Նոյեմի:

Որպեսզի աշակերտների գիտելիքները ավելի հիմնավոր ու կայուն լինեն, նա աշխատում է այդ գիտելիքները կապել ավելի պրակտիկ, չմոռացվող տպավորությունների հետ: Ընկեր Խաչիկյանի աշակերտներից ո՞վ կմոռանա ինքնաթիռով զբոսանքը Երևան քաղաքի վրա: Պատահական չէ, որ «Երևանը ինքնաթիռից» շարադրությունը 5-րդ դասարանի աշակերտները

ооооооооооооооооооооооооооооооооооооооооооооооооооооооооооооо

## ԱՅՍ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐՈՒՄ

Նոր ուսումնական տարում մեր հանրապետությունում շահագործման կհանձնվի 40-ից ավելի դպրոցական նոր շենք՝ բոլորը տիպային, 21960 աշակերտական տեղով:

Շենքերը ունենալու են արհեստանոցներ, կաբինետներ, լաբորատորիաներ, մարզադահլիճ, ճաշարան, խաղահրապարակ, հանդիսությունների սրահ:

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1977 թվականի դեկտեմբերի 22-ի «Հանրակրթական դպրոցների սովորողների ուսումը, դաստիարակու-

կարողացան հետաքրքիր գրել: Եթե դասի թեման Րաֆֆու «Արարատյան դաշտի առավոտն է» (հատված «Սամվել» վեպից), ապա դասին անպայման հետևում է էքսկուրսիա դեպի Արարատյան դաշտավայր, իսկ էքսկուրսիայից հետո՝ շարադրություն՝ «Արարատյան դաշտավայրը երեկ և այսօր»: Եթե մի խոշոր, հիշարժան կառույց է շահագործման հանձնվել, իրենց այցելությամբ առաջին շնորհավորողները ընկեր Խաչիկյանն ու նրա աշակերտներն են: Մոռանալու բա՞ն է գնացքով «Երևան—Հրազդան» էքսկուրսիան: Գնացքի առաջին ուղևորները ընկեր Խաչիկյանի դասարանն էր: Էքսկուրսիային ծնողներն էլ էին մասնակցում:

Ընկեր Խաչիկյանի առաջին դասարանի աշակերտը արդեն կարողանում է վերլուծել բանաստեղծության, պատմվածքի, նկարի բովանդակությունը և խոսելիս անպայման օգտագործում է «իմ կարծիքով» արտահայտությունը, որ նշանակում է նա իր մտածածն ու զգացածն է ասում, ոչ թե թութակի պես կրկնում է ուսուցչուհուն: Հաջորդ դասարաններում աշակերտներին, դասերից դուրս, ուսուցչուհին տանում է թանգարանները, ծանոթացնում մեծ արվեստագետների, նկարիչների, կոմպոզիտորների, գրողների նշանավոր ստեղծագործություններին:

Հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Նոյեմ Խաչիկյանը երեք տասնամյակից ավելի աշխատում է Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցում: Նրա աշակերտները ունենում են բարձր առաջադիմություն, աչքի են ընկնում ընկերասիրությամբ, ազնիվ են, բարեհամբույր ու ներողամիտ:

«...Հիմա հանդիպելու եմ ճերմակած մազերով, տարիներ շարունակ տետրերի վրա թեքվելուց մի փոքր կքված մեջքով, բարի, խորշոմած մի կնոջ: Ուսուցիչ լինելը դժվար է, շուտ են ծերանում»,—մտածում էի ես, երբ գնում էի դպրոց, ընկեր Նոյեմի հետ ծանոթանալու:

Ինձ հաճելի խաբկանք էր սպասում. ընկեր Խաչիկյանը երիտասարդ է, եռանդով լեցուն:

Նախանձելի է ընկեր Խաչիկյանը և նախանձելի են նրա աշակերտները, որոնց դպրոց ոտք դնելու պահից այդպիսի ուսուցչուհի է վիճակվել: Նրանք ամբողջ կյանքում սիրով ու շնորհակալությամբ են հիշելու իրենց սիրելի ուսուցչուհուն:

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

թյունը և աշխատանքի համար նրանց նախապատրաստումը էլ ավելի կատարելագործելու մասին» որոշումից, նոր ուսումնական տարում զգալի փոփոխություններ են տեղի ունեցել մեր հանրապետության հանրակրթական դպրոցների ուսումնական ծրագրերում: Օրինակ՝ 9—10-րդ դասարաններում աշխատանքի ուսուցմանը հատկացվում է 4-ական ժամ, նախկին 2-ի փոխարեն: Գծագրությունը ավարտվում է 8-րդ դասարանում (նախկին 10-ի փոխարեն): Օտար լեզվի ուսուցումն սկսվում է 4-րդ դասարանից (մինչ այժմ սկսվում էր 5-ից): Նախատեսված է ստեղծել ուսումնամեթոդական նոր կոմպլեքսներ՝ անգլերենի, ֆրանսերենի, գերմաներենի վերաբերյալ, և այլն:





# ԱՄԵՆԻՑ ԱՌԱՋ՝ ՔԱՂԱՔԱՑԻ...

Անգին Ջեթըլյանի հայրը՝ Անդրանիկը, քարտաշ բանվոր է, մայրը՝ Վեներան, բանվորուհի: Ընտանիքում հինգ երեխա է մեծանում: Անգինն այս տարի ավարտում է դպրոցը, 8-րդ դասարանցի գերազանցիկ աշակերտուհի է Մանուշը, Մարինեն՝ 6-րդ դասարանում է, իսկ երկվորյակ եղբայրները՝ Ստեփանն ու Հովիկը, երկրորդ դասարանցի են: Դուք երբ կարդալիս լինեք այս տողերը, նրանք արդեն մի-մի դասարան բարձր կլինեն: Հիմա ուսումնական տարվա վերջ է, երեխաները նոր միայն հրաժեշտ են տալու դպրոցին:

Անգինը գերազանցիկ է, բայց ոչ նման այն գերազանցիկներին, որոնք դասընկերներին հեռու են վանում իրենցից: Նա պատնեշ չի կանգնեցնում իր և համադասարանցիների միջև, շարունակ նրանց հետ է, նրանք իրենից միշտ հարցնելու բան ունեն, ինքն էլ իր չիմացածն է նրանց հարցնում:

Երևանի № 137 դպրոցը, որտեղ սովորում է նա, երաժշտական թեքումով է: Բայց չշտապենք եզրակացնել, թե Անգինը անպայման երաժիշտ է դառնալու: Նա սիրում է նաև կարդալ, բանաստեղծություններ է արտասանում, սիրում է մաթեմատիկական խնդիրներ լուծել:

Մենք միայն հաջողություն ցանկանք Անգինին, նրա քույրերին ու եղբայրներին, ինչ ասպարեզ էլ որ հետագայում ուղղ ընտրեն, և վստահ լինենք, որ նրանք ուր էլ գնան սովորելու, ինչ էլ դառնան, առաջին հերթին մարդ են լինելու, իրենց երկրին ու ժողովրդին նվիրված ազնիվ քաղաքացի:

ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ
ՇԱՐԱԴՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ

# ՀՈՂԻ ԿԱՆՉԸ

Մեր գյուղը ծվարած է Վայոց ձորի քարե դարպասի մի անկյունում: Նա գեղեցիկ է, և առավել գեղեցկացնում են նրան իր ազնիվ, աշխատասեր մարդիկ:

Նրանցից մեկն էլ Մինաս պապն է: Յոթանասունը բոլորած ծերունու մազերը սպիտակել են այգիներում: Բարի աչքեր ու վաստակած ձեռքեր ունի նա:

Ամեն գարուն, լույսը բացվելուն պես Մինաս պապը շտապում է այգի:

— Էս մի ձմեռն էլ գլորեցինք...

Գարնան գալու հետ Մինաս պապի սիրտը ուրախությունից ալեկոծվում է:

Մարդիկ հարցնում են.

— Մինաս պապ, ինչո՞ւ ես այսքան շուտ տանից դուրս գալիս:

— Հողը կանչում է, որդիս,—ասում է նա ու ծանրաքայլ գնում դեպի այգիները:

Շատ ճանապարհներ են ձգվում մեր գյուղից դուրս: Այդ ճամփաներով գնացին Մինաս պապի չորս որդիները և չորսից գոնե մեկը ետ չեկավ:

Աշնան երկնքի նման թախծոտ են Մինաս պապի աչքերը:

— Տարիներ հետո դու չես լինի, Մինաս պապ, բայց կլինեն քո գցած, խնամած այգիները, և քո աշխատանքի քաղցր պտուղը վայելող ամեն մեկը բարի կհիշի քեզ:

*ՄԱՐԳԱՐԻՏ ՄԿՐՏՉՅԱՆ*
*Եղեգնաձորի շրջ., գ. Ջիվա, 7-րդ դասարան*

# ՉԿԱՆ ԵՏ ՄՆԱՑՈՂՆԵՐ



Նրանք սովորում են Երևանի №172 անգլիական թեքումով դպրոցի չորրորդ Բ դասարանում: Անցյալ ուսումնական տարին այս դասարանը փակեց հարյուր տոկոս առաջադիմությամբ, 36 աշակերտներից 24-ը գերազանցիկ էին ու հարվածային: Ճիշտ է, ջոկատում կային նաև ետ մնացողներ, հատկապես անգլերեն և ռուսերեն լեզուներից ու մաթեմատիկայից, բայց ընկերների ջանքերով նրանք հաղթահարեցին դժվարությունները:

Ջոկատի գրեթե բոլոր անդամները սիրում են արվեստն ու սպորտը: Նրանցից քսանհինգը սովորում են երաժշտական դպրոցում, նաև ընդգրկված են մարզական տարբեր խմբակներում, իսկ Եղիազարյան Արսենն արդեն առաջին կարգ ունի շախմատից և մարմնամարզությունից:



Արմեն Դավթյանը սովորում է Երևանի № 139 դպրոցի 8-րդ դասարանում և բանաստեղծություններ գրելու լուրջ փորձեր է անում:
Տպագրում ենք նրա «Ծաղկեփունջ մի աղջկա» տրիոլետների շարքը:



Ձեզ եմ փնտրում ամենուր,
Սարի կապույտ զանգակներ,
Ժայռի գլխին, ձորի մեջ
Ձեզ եմ փնտրում ամենուր:
Ելեք, բացվեք իմ ճամփին,
Վառեք սիրտս անհամբեր,
Ձեզ եմ փնտրում ամենուր,
Իմ երկնագույն զանգակներ:



Լուսինն եմ սիրում արևից ավել
(Ասում են, որ դա իմ տարիքից է),
Երբ հիշում եմ քեզ խարույկի կողքին,
Լուսինն եմ սիրում արևից ավել:
Իմ երազների գույները վառման,
Նայիր, խառնվել են քեզ, ծաղիկներին...
Լուսինն եմ սիրում արևից ավել
(Ասում են, որ դա իմ տարիքից է):



Լուսին, փակիր իմ աչքերը,
Ես երազ եմ ուզում տեսնել,
Չքնելուց ես հոգնել եմ,
Լուսին, փակիր իմ աչքերը:
Այնքան ջերմիկ, այնքան անուշ
Հեքիաթներ կան քո ափի մեջ,
Ծաղ տուր դրանք իմ աչքերին,
Ես երազ եմ ուզում տեսնել:



Դու ժպիտներ ես նվիրում հաճախ
Պատահնուս վառվող, կանաչ աչքերին
Եվ կատակասեր իմ շրթունքներին
Դու ժպիտներ ես նվիրում հաճախ:
Ամենասիրուն ծաղիկներն անգամ
Լուռ նախանձում են քո ժպիտներին...
Դու ժպիտներ ես նվիրում հաճախ
Պատահնուս վառվող, կանաչ աչքերին:



Դու քանոն ես նվագում
Քո բարալիկ մատներով,
Իմ հույզերի լարերին
Դու քանոն ես նվագում:
Մեղմիկ սոնատ եմ դառնում
Եվ դառնում եմ խինդի ծով,
Երբ քանոն ես նվագում
Քո բարալիկ մատներով:



Անձրևը շոյեց քո սև մազերը,
Եվ դու էլ դարձար ցողոտ մի ծաղիկ,
Աշխարհը լցվեց ծաղկի բուրմունքով,
Անձրևը շոյեց քո սև մազերը:
Քո ամեն թերթից, ամեն տերևից,
Անգին գոհար է հիմա կաթկթում,
Անձրևը շոյեց քո սև մազերը,
Եվ դու էլ դարձար ցողոտ մի ծաղիկ:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 29. ԱՍՈՒՄ ԵՆՔ «ԿՐԱԿ», ՀԱՍԿԱՆՈՒՄ ԵՆՔ «ԺԻՐ». ՍԱ Ի՞ՆՉ ԲԱՆ Է

Սա խոսքը պատկերավոր դարձնելու միջոցներից, այլաբերության տեսակներից մեկն է, որ կոչվում է մետոնիմիա, թարգմանաբար՝ փոխանունություն, փոխանվանում, անվանափոխում:

Դատենք վերնագրում բերված օրինակով. խոսք է բացվում սովորականից դուրս ժիր, չարաճճի երեխայի մասին, և ասում են. «Երեխա հո չի, կրա՛կ է, կրա՛կ»: Այսպես մի անվանումը մեկ ուրիշով փոխարինելու շնորհիվ ավելի վառ պատկերացում ենք ստանում խոսակցության առարկայի մասին, քան կստանայինք ուղղակի բնորոշմամբ: Այդպես էլ, երբ լավ մարդու մասին ասում են՝ «ոսկի է, ոսկի» կամ կամքից զուրկ մարդուն կոչում են «փալաս»:

Հրամանատարը գրոհի է տանում իր զինվորներին՝ «Առա՛ջ, արծիվներ», գոչում է նա՝ «քաջեր» անվանումը մեկ ուրիշով փոխարինելով:

Կան անվանափոխման ուրիշ ձևեր նույնպես:

Երբ ասում ենք «քաղաքը քուն մտավ», «մեր դասարանն ամենից առաջավորն է», «դահլիճն աղմկում է», «մեր գյուղը հաղթող ճանաչվեց»՝ մենք աչքի առաջ ունենք ոչ թե քաղաքը, այլ այնտեղ ապրող մարդկանց, ոչ թե դահլիճը, այլ այնտեղ նստած ժողովականներին: Այս և համանման դեպքերում մենք պարունակվողի (մարդկանց) փոխարեն տալիս ենք պարունակողի (քաղաք, դահլիճ, դասարան) անունը:

Բայց ահա կարդում ենք՝ «մեր միջնադարյան գրիչները», «ստորաբաժանումն ունի հիսուն սվին» և այս դեպքերում էլ անշունչ առարկաների անվան տակ մարդիկ ենք հասկանում:

Գործողությունն ու գործողության գործիքն էլ կարող են փոխանունվել: Այդպես է, օրինակ, «երկիրը սրի մատնել» նախադասության մեջ: Կարող ենք և գրողի անունը տալ, բայց նրա ստեղծագործությունը հասկանալ. «Նա ամբողջ Տերյանն անգիր գիտե», «Դու Շեքսպիր կարդացե՞լ ես»:

Արի ու տես, որ կարող ենք նշանավոր անհատի անունը տալու փոխարեն հիշել նրա որևէ կարևոր հատկանիշը, կենսագրության փաստը, ծննդավայրի անունը, և լսողն իսկույն կհասկանա, թե ում մասին է խոսքը: Երբ Նեկրասովի բանաստեղծության մեջ հանդիպում ենք «արխանգելսկյան մուժիկ» բառերին՝ անմիջապես կռահում ենք, որ դա Արխանգելսկ քաղաքում ծնված ռուս մեծ գիտնականն է՝ Լոմոնոսովը: Այդպես էլ «մեծ լոռեցի» ասելով հասկանում ենք միայն և միայն Հովհաննես Թումանյանին: Հենց ինքը «մեծ լոռեցին» հեղինակն է ինքնատիպ մի փոխանվանումի. նա ռուս հանճարեղ գրող Լև Տոլստոյին կոչել է «մեծ դըժգոհը», աչքի առաջ ունենալով նրա

անսահման դժգոհությունը չարությամբ լեցուն կյանքից: Ու երբ նա գրում է՝ «Ընկավ մեծ գեղարվեստագետը, մեծ քարոզիչը ու մեծ դժգոհը», մենք հասկանում ենք, որ խոսքը վերաբերում է և Տոլստոյին:

Այսպիսով, մենք տեսնում ենք, որ փոխանվանումը, ինչպես այլաբերության ամեն մի ուրիշ տեսակ, կիրառություն է գտնում մեր առօրյա լեզվի մեջ, մյուս կողմից էլ՝ թարմ, ինքնատիպ փոխանվանում գտնելը շնորհքի գործ է, ստեղծագործական շնորհքի ու երևակայության:

Դուք, երևի, նկատեցիք, որ փոխանվանումը (մետոնիմիան) և փոխաբերությունը (մետաֆորան), իբրև այլաբերության տեսակներ, ունեն նմանություններ: Իրոք այդպես է: Բայց դրանք նույն բաները չեն: Մի անվանումը մյուսով փոխարինելիս պետք չեն օժանդակ արտահայտություններ՝ «կարծես թե», «ասես», «նման» և այլն, փոխանվանումը հասկացվում է առանց այդ ամենի:

Փոխանվանումի հետ ընդհանրություններ ունի նաև սինեկդոխը, թարգմանաբար՝ հարաբերակցում: Եվ այնքան որոշակի, որ մասնագետներից ոմանք դա համարում են ոչ թե ճնական ինքնուրույն ձև, այլ փոխանվանումի տարատեսակներից մեկը:

Սինեկդոխ կամ հարաբերակցում համարվում է այն, երբ մի առարկայի կամ երևույթի միայն մի մասի անունն ենք տալիս, բայց հասկանում ենք ամբողջը (նաև ընդհակառակը) կամ՝ երբ գործ ենք ածում եզակի թիվ, բայց հասկանում ենք հոգնակի: Հենց որ օրինակներ բերենք՝ երևույթն իսկույն պարզ կդառնա, կերևա, որ մենք վաղուց գիտեինք դա, միայն բնորոշումը չգիտեինք:

Լսում ենք կամ կարդում. «Պաշտոնական Լոնդոնը հակառակ դիրք է բռնել», «Ծիրվանզադեն մեծ դեմք է հայ ռեալիստական արձակում»: Մի դեպքում տրվում է երկրի մայրաքաղաքի անունը, բայց ամբողջ երկիրը՝ Անգլիան է հասկացվում, մյուս դեպքում ասվում է «դեմք», բայց հասկացվում է ամբողջ գրողն իր ստեղծագործությամբ:

Ինչո՞ւ է այդպես արվում. վերստին՝ խոսքն ավելի ուժեղ, տպավորիչ դարձնելու համար: Զուր չէ, որ ոճական այդ ձևն այնքան մեծ տեղ է գրավում ժողովրդական խոսքի, դարձվածքների մեջ: Ահա մի վառ օրինակ ժողովրդական խոսքի մեծ վարպետ Հովհաննես Թումանյանի գործերից.

Ոչ ամոթ ունի ուժեղը, ոչ վախ,
Վա՜յ եկել է տարել տըկարին:

Ինքնին հասկանալի է որ «Հառաչանքի» ծերունին խոսում է ոչ թե մի ուժեղի ու մի տկարի, այլ ուժեղների ու տկարների մասին առհասարակ:

Կարծում եմ, որ այս զրույցը կարդալով՝ դուք համոզվեցիք, թե փոխանվանումը (մետոնիմիա) և հարաբերակցումը (սինեկդոխ), իբրև այլաբերության տեսակներ, ինչպես են խոսքը դարձնում սեղմ ու տպավորիչ, մեծացնում խոսքի արտահայտչական հնարավորությունները: Եվ որքան լավ իմանաք դրանց նշանակությունը կարդալիս, գրելիս ու խոսելիս՝ այնքան ավելի լավ:



## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

Նա արթնացավ արևածագի հետ: Երկար հազաց ծղոտե անկողնու մեջ նստած և պինդ փաթաթվեց խայտաբղետ վրան-թիկնոցով: Մարմնում այրող թուլություն էր, աչքերի դեմ լողում էին դեղին բծեր, և նրան թվում էր, թե դուրսը նույնպես դեղին է:

«Հանկարծ չհիվանդանա՞մ»,— անցավ Կլիմկոյի մտքով: Եվ սարսափեց: Ի՞նչ կլինի այդ դեպքում: Այ թե մի լուցկի լինեն կամ էլ գոնե կայծքար, ծղոտով կրակ կաներ, կտաքանար, կարտոֆիլ կխորովեր կուտեր: Գուցե տաքից թեթևանար, թեև սիրտն ուտել չէր ուզում:

«Հարկավոր է ավելի արագ գնալ: Այնտեղ գոնե մարդիկ կան»:

Կլիմկոն հենց վեր կացավ՝ ոտքերը մղկտացին ցավից ու լցվեցին այրող տաքությամբ, բայց չընկավ ու նորից չնստեց, այլ երկու ձեռքով բռնելով քողտիկի կտուրից դուրս եկավ: Գետինը սառն էր: Արևը շողում էր ցողի հետ կայծկլտուքի տալով, թե՝ տեսնենք ո՞վ ավելի ուժեղ կփայլի, ու բոլորովին չէր տաքացնում: Բերանից թանձր գոլորշի էր ելնում: Կլիմկոն ձեռքերով քողտիկից բռնած հազում էր, սրսփում: Չէ, այսպիսի սառը գետնի վրայով հեռուն չես գնա:

Նա վերադարձավ քողտիկ, վերցրեց վրան-թիկնոցը և, լարվելուց ատամները պինդ սեղմած, պատռեց մի մեծ կտոր: Հետո դա էլ երկու կտոր արեց ու ստացվեց ոտքի երկու փաթաթան:

«Մեկ է, կթրջվեն ու կմրսեցնեն»,— մտածեց Կլիմկոն:

Ինչքան չկոտրտված չոր ծղոտ կար, հավաքեց, ներբաններին չափով հյուսեց երկու միջնատակ: Հետո ոտքերը միջնատակերի հետ միասին փաթաթեց վրան-թիկնոցի կտորներով ու ծայրերը կճերից վեր կապեց: Ապա վեր կացավ, քողտիկի շուրջը պտույտ արեց: Նոր ոտնամաններով քայլելը հեշտ էր և փափուկ: Ինչպես Հարեն պապը կասեր, ասաց ինքն իրեն.

— Կարելի է ապրել:

Նա դեռ էլի մի քիչ նստեց քողտիկում, ուժ հավաքեց ճամփա ընկնելուց առաջ, ուսն առավ պարկն ու շարժվեց,




ԳՐԻԳՈՐ ՏՅՈՒՏՅՈՒՆՆԻԿ

Սկիզբը՝ №№ 6—8,

մերթ ընդ մերթ կուչ գալով հազի պայթյուններից:

Քաղաքը սովորական ավանի պես սկսվում էր տնամերձ այգիներով:

Կլիմկոն քայլում էր տրամվայի ժանգոտած գծով, փայտյա մի կոճից մյուսն անցնելով: Ոտնամաններն հանել էր դեռևս քաղաքի ծայրին. անհարմար էր, այդ ոտնափաթաթաններով տեսնեին, կմտածեին թե մուրացող է:

Սկսվեցին ավելի երկար ու բարձր շենքերը՝ երեք, չորս, հինգ հարկանի, որոնք գորշ էին ու լուռ, ասես այնտեղ ոչ ոք չէր ապրում: Բայց մարդիկ շատացել էին: Եվ բոլորը ձեռնասայլերով, պարկերով, կապոցներով մի փողոց բռնած գնում էին: Փախստականներ են, թե քաղաքացիներ՝ չես հասկանա: Կլիմկոն ետևներից գնաց և շուտով տեսավ շուկան, որ սկսվում էր մուրացողներով: Նրանք խիտ առ խիտ նստել ու կանգնել էին կանաչ գունաթափ պարսպի տակ: Մեջները կային և տեսնողներ, և կույրեր, անոտ ու անթև մարդիկ, ծերեր ու ջահելներ:

Քաղաքի վրա՝ բարձր երկնքում ողնացին գերմանական ռմբակոծիչների խիտ եռանկյունները՝ կլինեին մի հիսունը, գուցե և ավելի: Նրանք պլպլում էին արևից, ասես ապակուց էին: Մուրացողները պապանձվեցին: Բոլորը, նույնիսկ կույրերը, գլուխները բարձրացրել ու տագնապահար հարցնում էին տեսնող հարևաններին.

— Ծա՞տ են...

— Ծա՜տ...

Շուկայում նույնպես լռություն տիրեց: Միայն դարպասի մոտակա ջարդված կրպակից մեկը բարակ ձայնով (պատերազմից առաջ այդպիսի ձայնով պաղպաղակ վաճառողներ կային, հիշեց Կլիմկոն) տաղտկալի ձվում էր.

— Էլ ո՞վ կա ժելայուշշի-ինտերեսույուշշի, բախտը բացեմ: Ջինջկան է միճակ հանում, ասում, թե ում ինչ է սպասում:

Կլիմկոն մոտեցավ բախտ բացողին ու կանգնեց նրա դեմ՝ ոտները տաքացնելով տաք, արևկեզ փոշում: Կինը նստել էր ցածրիկ աթոռակին, փեշում գրչատուփի պես երկար մի արկղիկ՝ լեփ-լեցուն ճարպոտած թղթերով: Փեշի տակից նրան էր նայում Ջինջկան՝ փոքրիկ, առնետի նման մի գազանիկ, սպիտակ ու դեղին բծերով: Գազանիկի աչքերը մանրիկ էին ու խորամանկ:

Կլիմկոն մատով կպավ դնչին ու ժպտաց:

— Ի՞նչ ես ուզում,— զայրացած հարցրեց գուշակուհին: Նրա թշերը տռուզ էին, կարմիր, խիտ կապույտ երակներով պատված: Նա ի զարմանս Կլիմկոյի խոսեց բամբ ձայնով:

— Ոչ մի բան...— ասաց Կլիմկոն:— Իսկ դուք գերմանական գալեթներով բախտ չե՞ք բացում: Կամ էլ թե չէ կարտոֆիլով:

— Ցույց տուր:

Կլիմկոն տոպրակը դրեց փոշիների մեջ ու բռով կարտոֆիլ հանեց:

— Մանր է,— ասաց գուշակուհին:— Եղպիսինով՝ ոչ:

Գալեթները նրան ուրախացրին:

— Օ՜, թեյի համար հարմար է:— Եվ հրամայեց գազանիկին:— Ջինջկա, ռաբոտայ՝ աշխատի...

Գազանիկը ճարպկորեն ցատկեց արկղին, հոտոտեց, ֆռթացրեց և ատամներով հանեց մի թուղթ՝ գրոտած մանկական անհավասար ձեռագրով:

«Շուտով ճանապարհի վրա տեսակցություն կունենաս ամուսնուդ հետ»,—կարդաց Կլիմկոն:

— Սա ինձ համար չի, կանանց համար է,—ասաց նա գուշակուհուն տալով թուղթը:

Բայց գուշակուհին, ասես, հանկարծ խլացել էր, Կլիմկոյի կողմը չէր

նայում, Զինոչկային դրել էր փեշի տակ ու աթոռակի վրա ճոճվելով նվում էր զզվելի բարակ ձայնով.

— Էլ ո՞վ կա ժելայուշչի-ինտերեսույուշչի, բախտը բացեմ...

Գործ, արևից գունաթափ վաճառասեղանների ետևում նստոտել ու կանգնոտել էին կանայք ու պապիկներ և կամաց, զգույշ չորս կողմը նայելով առաջարկում էին իրենց ապրանքները: Այդ ողջ բարիքները չէին վաճառվում, այլ փոխանակվում էին հագուստով, կերոսինով, օճառով, լուցկիով...

«Երևում է էստեղ էլ փողը ոչ ոքի պետք չի»,—վախով մտածեց Կլիմկոն, զգալով, որ ոչինչ չպիտի կարողանա ձեռք բերել:

Ամենավերջին՝ փայտե անիվներով սայլի մոտ կանգնել էր մի աղջիկ, գլխին մինչև աչքերն իջեցրած հնամաշ սև գլխաշոր: Նրա ձեռքին խնամքով, մեկիկ-մեկիկ դասավորած թավշածաղիկների մի փունջ կար: Ուսերին էլ գցած էր գլխաշոր՝ մեծ, վառ, կանաչ-կարմիր ծաղիկներով, մուգ կարմիր ծոպերը քիչ էր մնում քսվեին գետնին: Աղջիկը գլխաշորը կապել էր պառավական ձևով՝ շեղ, ատամնացավով տառապողի պես: Նրա փոքրիկ բարակ մատները, որոնք պահում էին ծաղիկները, կանաչ ցողունները ջոկջկում էին ու նորից միացնում:

— Առեք իմ գլխաշորը: Տեսեք ինչ սիրուն է...—մեղմ, այնպես հեզիկ ու երկչոտ խնդրում էր աղջիկը, որ Կլիմկոն կանգ առավ նրա մոտ:— Ես ծաղիկներն էլ հետը կտամ... Առեք իմ գլխաշորը...

Կլիմկոն շփոթվեց, հենվեց մեկ այս, մեկ այն ոտքին ու ասաց.

— Գի՞ժ է, ինչ է, հիմի ո՞ւմ են պետք քո այդ ծաղիկները:

Աղջիկը տագնապահար նայեց նրան մուգ ստվերոտ հայացքով և ամուր սեղմեց գլխաշորը:

— Ինձնից մի վախեցեք,— ծրպտաց Կլիմկոն ու հիշեց, որ ինքն այսօր չի լվացվել:— Ես խուժան չեմ, ես էստեղ աղի եմ եկել...

Աղջիկը շրջվել ու կանգնել էր լուռ:

— Էդ տղան ճիշտն է ասում,— ձայնեց խանութի կողմից մի քեռի,— սելդ կանգնեցնեիր ինձ մոտ ու գնայիր առևտուր անողներից ինչն ինչով որ հարկավոր է՝ փոխանակեիր, թե չէ «թավշածաղիկներ»...

Աղջիկը նույնքան տագնապահար նայեց քեռուն:

Քեռին նստել էր հենց գետնին, ոտքերը փաթաթած հին վերմակով: Քունքերը ծածկված էին նոսր, գանգուր ճերմակով, իսկ դեմքն ամբողջովին կնճռապատ էր: Կլիմկոյին թվաց, թե նրա ամեն կնճիռի մեջ պահված էր մի բարի, մեղմ ժպիտ: Քեռու առջև երկու հավասար շարքով դրված էին ռետինե տակերով չստեր՝ մեծ ու փոքրր, նաև բոլորովին փոքր, երեխայի: Երևի կոշկակար էր, ինքն էլ կարում էր դրանք:

Կոշկակարը մատով կանչեց Կլիմկոյին:

— Հեռվի՞ց ես գալիս, թե՞ էստեղացի ես:

— Դոնբասից եմ:

— Ա-ա: Հայրենակից ես... Ասում ես աղի՞ ես եկել:

Կլիմկոն գլխով արեց:

— Բա ի՞նչ ունես աղի համար:

— Ահա պարկ,— Կլիմկոն ուսից իջեցրեց պարկը:

— Չէ,—ժպտաց կոշկակարը, և նրա ամեն մի խորշոմը նույնպես ծրպտաց:— Ես հարցնում եմ՝ ինչո՞վ ես առնելու կամ փոխանակելու: Մի կարգին շոր-մոր, կամ էլ մարկ ունե՞ս:

— Էդպիսի բան չունեմ,—հոգոց հանեց Կլիմկոն, ուշադիր նայելով



*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*

չստերին (Չփորձե՞մ փոխանակել):— Մինչև պատերազմը եղած փողերից ունեմ, բայց դրանով ոչ մի բան չեն ծախում: Հարկավոր է գնալ բլուրները, էնտեղ,— նա թափ տվեց ձեռքը,— էնտեղ ես ձրի կհավաքեմ:

— Բա ինչի՞ ես ոտաբոբիկ:

— Որ հեշտ լինի քայլելը...— Կլիմկոն հազիվ ծռեց շուրթերը, որ ժպտա:— Ես դեռ կարտոֆիլ էլ ունեմ: Միգուցե ոտնամանների հետ փոխե՞ք: Մի քիչ մանր է, ճիշտ է...

— Առ, չափիր:

Կլիմկոն հագավ չստերը: Ոտքերն իսկույն հանգստացան:

— Մեծերը վերցրու, որ փաթաթաններով էլ մտնեն,— խորհուրդ տըվեց կոշկակարը:

Կլիմկոն լսեց նրան, հագավ մեծերը և ուզեց պարկի կապն արձակել:

— Պետք չի,— ասաց կոշկակարը:—Մաշիր, դե որ հայրենակիցս ես...

Նա մի ծխախոտ փաթաթեց, վառեց փամփուշտով պատրաստված ինքնաշեն վառոցով և, ծխով պարուրված, ասաց.

— Իսկ աղը, որդիս, բաց ես թողել: Մի հիսուն կիլոմետր ավել ես եկել: Սիլը Արտեմիվսկու մոտ է: Լըսած կա՞ս (Կլիմկոն լսել և նույնիսկ տեսել էր այդ քաղաքը հեռվից, երեք օր առաջ): Այ հենց դրա մոտ էլ մի կայարան կա, կոչվում է Սիլ: Բնտեղ է աղը: Թե չէ էստեղ ի՞նչ՝ կավիճ, սոդա, աղի ջուր կա լճերում, հո պարկով չե՞ս հավաքի... Բաց ես թողել աղը, եղբայրս:

Կլիմկոյի վրա տաքություն խուժեց, ոտքերը դողացին և ուժահատվեցին, ինչպես ամբողջ օրվա քայլելուց: Նա նստեց խանութի տախտակե կոտրված շեմին ու լռեց, ափերը սեղմելով այտերին:

— Ի՞նչ արած... ետ կդառնամ,— հազիվ արտասանեց նա, կուլ տալով• բկին դեմ առած կոշտը և հազաց:

— Օհո, ոնց ազդվեցիր:—Կոշկակարը Կլիմկոյի ուսին դրեց ածխաքսեկորներից վնասված, ասես լեղակում թաթախված մեծ ձեռքը:—Ոչինչ, մի թթվի, մի բան կմտածենք:

Մեկ էլ խանութի ետևից հայտնվեցին երկու ոստիկան: Մոտ քառասուն ոստիկան՝ հավասար հեռավորության վրա, արագ քայլում էին զույգ պարիսպների կողքով:

— Մեկին որսալու են...

Բոլորը սսկվեցին, և այդ լռությունից՝ շուկայի հրապարակը դարձավ ահազդու մռայլ:

Կլիմկոն նկատեց, որ շուկայից հըրապարակով, սկզբում մեկ-մեկ, հետո փոքրիկ խմբերով, սկսեցին չքվել մարդիկ: Նրանք քայլում էին անշտապ, կարծես թե բազար էին արել-պրծել, ապա ավելի ու ավելի արագ... Եվ հանկարծ վաճառասեղանների մոտ լռության մեջ, ընդհատ-ընդհատ, ճըչաց մի կին. «Վո՜ւյ, էդ ի՞նչ եք անում: Բաց թողեք էրեխիս: Բա՜-ա՜ց թողեք»:

Ամբողջ վաճառանոցը միանգամից հանկարծակիի եկավ ու ընկրկեց, ճռճվեց: Մարդիկ վազեցին մեկը մյուսին բախվելով, ուսերի արանքներով փախցնելով իրենց պարկերը, կապոցները, տոպրակները:

— Ա՜-ա՜-ա՜...— թևածում էր շուկայի վրա, ինչպես հազարաձայն տրնգոց:

Իսկ ձեռնասայլերի մոտ խռնվածների մեջ սողոսկեց Կլիմկոյին անծանոթ մի բառ.

«Ծուրջկա՜լ... Ծուրջկա՜լ...»:

Մարդկային գորշ ալիքը հուսակըտուր ճիչով թավալվեց պարսպի վրա: Այն ճկվեց, ասես ռետինից էր, ճռնչաց ծայրից ծայր ու խորտակվեց: Բայց փողոցում, սեղմ, համարյա մեկը մյուսին կպած, կանգնել էին գերմանական մոտոցիկլներ և բեռնատար ավտոմեքենաներ: Լսվեց մի քանի ավտոմատային կրակահերթ, երևի դեպի վեր էին կրակում, և ամբոխը նորից ետ դարձավ, շուկայի հրապարակով մեկ ցրվեց: Նրա մեջ թանձր կապտին էին տալիս ոստիկանական շինելները:

— Ջահելներին են որսում,—ասաց կոշկակարը, աչքերը կուչ ածած, սուր նայելով այնտեղ, որտեղ խլթխլթում էր մարդկային բազմությունը:

Նա դարձավ աղջկան.

— Դու, աղջիկս, արի նստիր մոտըս: Էդ գլխաշորդ էլ թաքցրու, թե չէ աչք է ծակում շուկայով մեկ:

Աղջիկը,-գունատ, խոշոր խաժ աչքերով, վախից դողացող մատներով ճմըրթեց գլխաշորը, թաքցրեց ժակետի փեշի տակ: Նա նստեց Կլի՛մկոյի ու կոշկա-

կարի միջև, երեսը ծածկեց ձեռքերով ու սկսեց լաց լինել:

— Սո՛ս,— խիստ հրամայեց նրան կոշկակարը:—Նստիր քեզ համար ու տապ արա: Համր՝ ոնց որ ձուկ:

Հրապարակի մեջտեղում մեկը մյուսին սեղմված խռնվել էին երեսուն աղջիկ և նրանց մեջ՝ մեն-մենակ, բարձրահասակ, բոլորից մի գլխով բարձր դալկադեմ մի պատանի: Այնտեղից լացի ձայներ էին լսվում: Ոստիկանները հրացանները պատրաստ պահած օղակել էին գերիներին ու տանում էին դեպի դարպասը:

— ...Է, էստեղ մենակ պառավներ են, արդեն նայել ենք,—լսեց Կլիմկոն փափախավոր ոստիկանի ձայնը: Նրանք երեքով էին: Մոտենում էին, հայացքով զննում ձեռնասայլավորների դեմքերը:

Աղջիկն անձայն լաց էր լինում ու շշնջում կոշկակարին.

— Փրկեք ինձ, քեռի, փրկեք...

— Կամա՛ց-կամա՛ց-կամա՛ց,— արագ ասաց նրան կոշկակարը:— Մի վախենա...

Իսկ Կլիմկոն պարկից հանեց պատռած վրան-թիկնոցն ու այնպես բաց արեց, որ ծածկի աղջկան և սկսեց շուրջը նայել մտահոգ փնթփնթալով ինչ բառ որ գլուխն էր գալիս.

— Թե ճղոտած չլինեն, ավելի երկար կլինեն... Բայց ճղված է...—իսկ գլխում ցատկոտում էր սա. «Մենակ թե անցնեին, մենակ թե անցնեին»:

— Ըհը, ահա թե որտեղ է թաքնըվել:

Կլիմկոն տեսավ վրան-թիկնոցի վրայով սև մահուդե թևքի միջից մեկնած ձեռքը: Այդ ձեռքը իր երեք մատներով բռնեց աղջկա ծնոտը և հրեց դեպի վեր: Աղջիկը բարձրացրեց գլուխը և նայեց ոստիկանին արցունքով լիքը խաժ աչքերով:

— Ույույո՜յ... Աչիկները լաց են լինում... Ինչո՞ւ, ծաղիկս, ո՞վ է քեֆիդ կպել, հը՞:

— Երեխին ձեռ մի՛ տուր,—կամաց, բայց հրամայաբար արտասանեց կոշկակարը:

— Ի-ի՞նչ,— հարցրեց ոստիկանը խեթելով նրան լպիրշորեն ուրախ մոխրագույն աչքերով:—Ի-ի՞նչ կմկմացիր...

— Երեխին ձեռ մի տուր, ասում եմ,— խոպոտ ասաց կոշկակարը:

— Հապա մի 'վեր կաց,—ձգվեց ոստիկանը: Մյուս երկուսը նույնպես մռայլ նայում էին կոշկակարին:— Կանգնե՛լ, ո՞ւմ է ասված:

— Ի՞նչի վրա կանգնեմ,—քմծիծաղ տվեց կոշկակարը: Նա չէր նայում ոստիկանին, այլ ինչ-որ տեղ՝ նրա ծնկների ուղղությամբ:

Ոստիկանը կտրուկ, ուղիղ հարվածեց նրա դեմքին ձեռքի հինգ մատներով:

Կոշկակարը օրորվեց ետ-ետ, բայց չընկավ, հասցրեց հենվել ձեռքերին:

Նա ափով ծածկեց պատռված շրթունքը, իսկ ոստիկանը սապոգով դեն շպրտեց վերմակը և մի քայլ ետ գնաց քերանը ծռմռելով: Կոշկակարի տակ կար փայտե փոքրիկ մի սայլակ գընդիկավոր անվակներով: Կողքին ընկած էին երկու փայտե հիչներ՝ տախտակի երկու կտոր կաշեպատ բռնակներով:

— Փուլնքոտ,— անչար, ափը աչքերին հով արած ասաց կոշկակարը, առաջվա նման նայելով ոստիկանի ծնկների ուղղությամբ:— Ես, որպեսզի քո տեղը տաք լինի, ոտքերս հանքահորում եմ թողել, իսկ դու դրա դիմաց ատամներս ես փշրում...

Ոստիկանը հազաց մատները ափի մեջ հավաքած ու սրբեց շրթունքները, ասես ուղղելով ծռմռված բերանը, և նորից դարձավ աղջկան:

— Քեզ էլ, ինչ է, խնդրե՞նք,—ա֊սաց ատամների արանքից, չանթեց նրա ձեռքն ու քաշեց իրեն:

Աղջիկը ճչաց ու ընկավ ծնկաչոք, գլխաշորը սահեց փեշի տակից ու փռվեց գետնին:

Կլիմկոն բաց թողեց վրան-թիկնոցը, կպավ աղջկա մյուս ձեռքից ու գոռաց.

— Բաց թողեք: Սա իմ քույրն է: Իմ քույրը, լսո՞ւմ եք: Նա ինձ մոր տեղ է:

— Դե թող այս մուրացկաններին, Ստյոպա...—ասաց երրորդ ոստիկանը մի հայացք գցելով մարդկանց վրա, որ թողել էին իրենց սայլերն ու մոտ եկել:—Գնանք: Առանց դրան էլ յոլա կգնանք:

— Ես ք-քո,— չար փնչացրեց այն մեկը, որ փափախով էր:—Մեկ է, ձեռքիցս չես պրծնի: Լսեցի՞ր:

Ոստիկանները գնացին դեպի դատարկ վաճառասեղանները և շտապով անհայտացան դարպասի ետևում:

— Ընը, տեսա՞ր, պրծավ-գնաց,— ասաց կոշկակարը աղջկան, ափով սրբելով արնաշաղախ շրթունքները:

Աղջիկը մնացել էր ծնկների վրա չոքած և համրացած նայում էր գլխաշորին, որ տարածվել էր գետնին: Իսկ Կլիմկոն բռնել էր նրա ձեռքից ճեփճերմակ մատներով և հազում էր, հազալուց դողում:

Մեկ էլ աղջիկն ասես ուշքի եկավ. խլեց կոշկակարի ձեռքը և շոյում էր իր բարակ մատիկներով և մրմնջում, մըրմընջում արտասվելով.

— Շնորհակալ եմ ձեզանից, քեռի ջան, շնորհակալ եմ, հարազատս... Ինչ արեցին դրանք ձեզ... իմ պատճառով... հավիտյան չեմ մոռանա... Շնոր...

Կոշկակարը մեղմորեն ազատեց ձեռքը:

— Ինչի՞ ես լաց լինում: Պրծավ գնաց, թող կորչի, դու ուրախացիր, որ պրծավ: Դեռ շա՞տ ճամփա ունես գնալու:

— Սումշչինա եմ գնում, քեռի ջան... Ես Դոնբասում էի, հանքերում: Իսկ էստեղ պատերազմ է: Հիմի մորս մոտ եմ ուզում հասնել...

— Եվ կհասնես, ինչո՞ւ չէ,—մեղմ խոժոռելով հոնքերը ասաց կոշկակարը:

Աղջիկը շուռ եկավ դեպի Կլիմկոն և մեղավոր, ամաչկոտ նայեց նրան արտասվաթոր աչքերով:

— Շնորհակալ եմ, եղբայրիկ... Ես էլ քեզնից մի իսկույն վախեցա. Կարող է ճամփադ իմի հետ մե՞կ է, հը՞:

— Ես մյուս կողմն եմ գնում,—ասաց Կլիմկոն հազի միջից:—Դոնբաս:

— Թե չէ լավ կլիներ, իսկապես, իմ եղբայրը դառնայիր...—Աղջիկը խեղճ-խեղճ բարձրացրեց աչքերը:—Ես եմ ու մայրիկս, էլ ուրիշ ոչ ոք չունենք: Կապրեիր մեզ հետ...

— Ես մյուս կողմն եմ գնում,— ասաց Կլիմկոն:

Նրանց մոտով ձեռնասայլն էր քըշում երկար, կապույտ թիկնոցով մի կին՝ բոբիկ ոտքերին կրկնակոշիկներ:

Կոշկակարը ձայն տվեց նրան.

— Այ ջահել կնիկ, չուստեր էիր ուզում աղի դիմաց: Դե առ:

— Հա, ուզում էի,— ասաց կինը, կանգ առնելով սայլի հետ:—Դուք էլ ախր ալյուր էիք ուզում գոնե մի հինգ

բաժակ: Չկա, ախպեր, ալյուր չեմ բերել:

— Ոչինչ, մի կերպ յոլա կգնամ, որ էդպես է: Աղով փոխենք: Էստեղ հրես մի տղա կա,—կոշկակարը գլխով ցույց տվեց Կլիմկոյին,—հայրենակիցս է,Դոնբասից է եկել հասել էստեղ: Երկու հարյուր կիլոմետր է կտրել, որ աղ ճարի: Բայց հիմի էստեղ աղ որտեղի՞ց:

Կինն արագ հայացք նետեց Կլիմկոյի վրա:

— Բաժանել եմ ախր աղը, այ մարդ: Սա խնդրեց, նա խնդրեց. «Տվեք, մորաքույր ջան, գոնե թաշկինակովս մեկ, գոնե մի բուռ»: Խըղճում էի: Մի տասը բաժակ թե մնացած լինի:

«Տասը բաժակ»,— անցավ Կլիմկոյի մտքով և պատկերացրեց աղի կույտը, այնքան մեծ: Եվ իրար անցած փորփըրեց գրպանները փողը հանելու:

—Տանն էլի ունեմ, էն էլ շատ-շատ: Սիլից եմ երկու պարկ բերել պատերազմի սկզբին: Բայց էստեղ սա է, մի քիչ տակը մնացել է...—Կինը սայլից հանեց դեղնագորշ տոպրակը:

— Տվեք, ինչքան որ կա,—ասաց կոշկակարը,—ու ոտնաման ջոկեք ձեզ համար, որը որ աչքներդ բռնի:—Հետո մտածեց և ավելացրեց.—Կարող է տըղան օգնի ձեզ սելը մինչև տուն տանել, դուք էլ էնտեղ մի քիչ էլ աղ ավելացրեք, հը՞:

— Մորաքույր ջան, ես ձեզ համար ջուր կբերեմ, փայտ կկտրեմ կամ էլ ինչ-որ պետք է, ինչ որ ասեք կանեմ: Ազնիվ խոսք:—Կլիմկոն շտապ-շտապ ետ ոլորեց գրպանի մետաղալարը և կնոջը մեկնեց իր բոլոր փողերը, նայելով նրան վարից վեր հիվանդ աչքերով:

Կինը տխուր նայեց նրան:

— Ինձ հարկավոր չեն փողերը, տղաս: Ես քեզ էնպես էլ կտամ մի կես փութ, դեռ ավել էլ, ինչքան ուժդ պատի տանել:

— Գնացինք, մորաքույր,— ասաց Կլիմկոն կնոջը:—Միասին ուրախ կըլինի, չէ՞:

— Բայց դու հեչ վախ չունես,— նկատեց կինը:—Վախ չունես, չէ՞:

— Չգիտեմ,— շփոթվեց Կլիմկոն:

Նա բռնեց կնոջ սայլի սառը մետաղե բռնակը ու էլի մի անգամ նայեց կոշկակարին, որ դանդաղ հեռանում էր ստվերանախշ մայթով. ստվերից արև, ստվերից արև...

*(Շարունակելի)*



# ԱՇՈՒՆ

*ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ*

Այս ծեր ծառի ճյուղին
Մի տերև է կպել՝
Տեսքով պաղ ու դեղին,
Հոգնած, տխուր տերև:

Աշո՞ւն, աշուն չքնաղ,
Նրան բարի՛ նայիր,
Մրգի բուրմունքներով
Օրորիր ու պահիր:

Ու թե պիտի ընկնի,
Թող որ ընկնի անցավ,
Ընկնի՝ չիմանալո՞վ,
Որ եկավ ու անցավ...

# ԱՌՎԻ ՁԱՅՆՈՎ

*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

Առվի ձայն հանելով,
Վազեցի փողոցով.
Ինձ թռչունը տեսավ.
— Մի երգիր, այ տղա,
Դու առու չես դառնա:

Առվի ձայն հանելով,
Վազեցի բակերով,
Թթենին ինձ տեսավ.
— Ամոթ է, այ տղա,
Դու առու չես դառնա:

Առվի ձայն հանելով,
Վազեցի մարգերով,
Առվակը ինձ տեսավ.
— Դու վազում ես անհոգ,
Բայց պարտեզն է ծարավ:



# ԼՈՒՍԱԲԱՑ

*ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ*

Դեռ չեն սթափվել գիշերվա քնից
Լեռները լազուր,
Արթուն պահակ են կանգնել չորս կողմից
Գագաթները սուր:
Մի գոռոզ ժայռ է երկինք մխրճել
Իր քիթը դաշույն—
Հառնել է ծագող արեգակի դեմ
Պարզ ու վեհաշուք:
Ու նրա սայրին կիսվում է այգը՝
Նման մեծ նռան՝
Թափվում արևի հյութը կենարար
Լեռների վրա:



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

# ՆՈՐ ՇԱԼՎԱՐԸ

Օգոստոսի վերջերին, երբ Անտոնը վերադարձավ պիոներական ճամբարից, շալվարը պատռված էր: Մայրը նկատեց և ասաց.

— Վաղը չէ մյուս օր դասերն սկսվելու են. կիրակնօրյա կոստյումները նստարանների վրա կփչանան, իսկ այս շալվարով դպրոց գնալ չի լինի:

Փոքր անց ներս մտավ քեռի Հայնրիխը, որը քաղաքում անուն հանած դերձակ էր: Երբ լսեց քրոջ որդու շալվարի պատմությունը, ասաց.

— Ինձ մոտ մի լավ շալվար կա. մի տղա օրեր առաջ պատվիրեց, բայց չեկավ տանելու, կարծում եմ, որ այն քեզ կգա: Լավ էլ կարել եմ:

Հաջորդ օրը Անտոնը քեռու մոտից բերեց շալվարը, բայց երբ փորձեց, տեսավ, որ մի քիչ երկար է, եթե մի հինգ սանտիմետր կարճացնեն, ամեն ինչ լավ կլինի:

— Կարճացնել չի լինի,— ավելացրեց քեռին,— դու կարող ես օրական երկու կարկանդակ ավել ուտել և շատ շուտով շալվարը կլինի քո չափսին:

Երբ քեռին գնաց, Անտոնը դարձավ մորը.

— Մայրիկ, ինչ կլինի, կարճացրու շալվարը:

— Ես այսօր այնպես հոգնած եմ, կարճացնելու էլ ժամանակ չունեմ,— պատասխանեց մայրը,— հետո կանեմ:

Բա էլ ինչի՞ համար են իր երեք քույրերը,— ինքն իրեն մտածեց Ան-

տոնն ու շալվարն առած վազեց մեծ քրոջ մոտ.

— Անի ջան, Անի, առավոտյան դպրոց եմ գնալու, ինչ կլինի կարճացրու շալվարս, շատ եմ խնդրում։

— Ես այդ կանեմ հետո, հիմա շտապում եմ, թատրոնի տոմս առնելու պետք է գնամ,—գրեթե կոպիտ պատասխանեց Անին։

— Գինա, գոնե դու կարճացրու,— խնդրեց Անտոնը միջնեկ քրոջը։

— Ժամանակ չկա, այսօր մենք պետք է փորձ անենք, որովհետև մեր պարային խումբը շուտով ելույթ է ունենալու, ես անպայման կանեմ, բայց հետո։

Մնում էր միայն երրորդ քույրը՝ Ֆրանցին. երբ Անտոնը նրան էլ նույն խնդրանքով մոտեցավ, սա էլ ուրիշ պատճառ բռնեց.

— Շտապում եմ ակումբ գնալ, այսօր ժամանցի երեկո է, հետո կանեմ։

Անտոնը ձեռնունայն մնաց։ Նա ընթրեց ու պառկեց քնելու։ Նոր շալվարը գցած աթոռին, Անտոնը պառկել ու մտածում է. «Ոչ ոք ինձ համար ժամանակ չունի։ Վաղը սկսվում է ուսումնական տարին, և ես այս շալվարո՞վ պետք է դպրոց գնամ... Ինչ կասեն...»

Անտոնը քնեց։

Քառասունհինգ րոպե անց Ֆրանցին վերադարձավ ժամանցի երեկոյից։ Հիշեց եղբոր խնդրանքն ու վերցրեց շալվարը։ Ձեռքի վրա կարճացրեց այն ու գցեց աթոռին։

Անտոնը խոր քնի մեջ էր։ Նա նույնիսկ չէր էլ զգացել, որ սենյակ էր մտել մյուս քույրը՝ Գինան։

— Շալվարը պետք է հինգ սանտիմետր կարճացնել,—մտմտաց նա,— թե չէ Անտոնը ինձնից շատ կնեղանա,— ու վերցնելով շալվարն ինքն էլ կարճացրեց։

Ավելի ուշ եկավ Անին։

— Ես պետք է ինչ-որ բան անեի,—մտածեց նա ու հիշելով, մտավ եղբոր սենյակը, աթոռի վրայից վերցրեց շալվարը, կարճացրեց հինգ սանտիմետր, արդուկեց ու դրեց տեղը։

Կես գիշեր էր։ Անտոնի մայրիկը հոգնած քայլերով մոտեցավ քնած որդուն, շալվարը վերցնելով տարավ կարճացրեց Անտոնի ուզածի չափ ու կախեց տեղը։

Առավոտյան Անտոնը, երբ շալվարը ձեռքն առնելով տեսավ, որ կարճացրել են, շատ ուրախացավ, բայց կարճատև եղավ նրա ուրախությունը։

Սենյակից լսվեց Անտոնի լացի ձայնը։

Անին, Գինան, Ֆրանցին ու մայրիկը վախեցած մոտ վազեցին։ Ու բոլորը ապշած մնացին։ Անտոնը կանգնած էր բոլորովին կարճ շալվարով։

— Բան չեմ հասկանում,—գլուխն օրորելով ասում է մայրիկը,—ես ախր միայն հինգ սանտիմետր եմ կտրել։

Երեք քույրերը կծել էին շրթունքներն ու գունատ կանգնել։

«Ես էլ», իրար հետևից կրկնեցին քույրերը։

Դասերն սկսվելուց հինգ րոպե անց Անտոնը հայտնվեց դասընկերների մոտ։

— Օ՜հ, օ՜հ... մի տեսեք ի՞նչ շալվար է հագել Անտոնը,—ծիծաղելով ասաց Անտոնի ընկերուհին՝ Էլկեն,— այ քեզ շալվար։

— Դու ի՞նչ ես հասկանում, Անտոնի շալվարը վերջին մոդայով է,— բրքջալո՜վ ավելացրեցին մյուսները։

*Գերմ. թարգմ. ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆԸ*



# ՆԱԽ՝ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅՈՒՆ

Առաջին քառորդում մանկավարժական խորհուրդը հաճախ էր քննարկման առարկա դարձնում 7-րդ դասարանի կարգապահության հարցը, այն, որ նրանք սեղաններին ու պատերին փորագրում են, դասերից փախչում, ծույլ են, իրար հետ անհաշտ:

Առաջին քառորդի վերջում, երբ Արևիկը, ամոթխած ու փոքրամարմին մի աղջիկ, հարևան գյուղի դպրոցից տեղափոխվեց նրանց մոտ, նրան իրենց մեջ առնելու փոխարեն վանում էին, վիրավորական անուններով կանչում: Արևիկը մտածում էր թողնել հեռանալ այդ դպրոցից, և միայն Վարդանի ու Արմինեի լավ վերաբերմունքի շնորհիվ էր, որ մնաց:

— Դասարանը մերն է, դասարանցիները մենք ենք, ինչո՞ւ չենք կարողանում մենք մեզ վրա իշխել,— հաճախ բորբոքված ասում էր ջոկխորհրդի նախագահ Արմինեն:

— Մի տարի հետո կոմերիտմիության շարքերն ենք ընդունվելու, մինչդեռ կարգին պիոներ էլ չենք,— հիշեցնում էր դասարանի ավագ Վարդանը:

Դասարանը լսում էր, կարծես թե համաձայնում, բայց շարունակում նույնը: Իսկ Տիգրանի համար ասած-չասած մեկ էր: Ոչ մի միջոցառման չէր մասնակցում: Աղջիկներից շատերն էլ խռով էին իրարից, ամեն չնչին առիթով կռվում էին, իրար վրա չարախնդում: Եվ մթնոլորտը դասարանում գնալով ավելի ու ավելի էր վատանում:

Ջոկխորհրդի նախագահն ու դասարանի ավագը իրար հետ խորհրդակցելուց հետո, ըսկըսեցին առանձին-առանձին խորհրդակցել նաև այն աշակերտների հետ, որոնք կարող էին հասկանալ իրենց, բայց կուլ էին գնում վատներին, ենթարկվում նրանց ազդեցությանը: Համախոհները համաձայնության եկան, նրանց շրջանակը սկսեց ընդլայնվել, իսկ ծույլերի ու անկարգապահների օղակը օրն օրին սեղմվում էր: Երկրորդ քառորդի կեսին արդեն հատուկենտ աշակերտներ էին ձեռնպահ մնում ջոկատի միջոցառումներին մասնակցելուց, իսկ առաջին կիսամյակից հետո դրանք, նույնիսկ Տիգրանը, փոխվեցին: Դասարանում վերացավ վեճ ու կռիվ, վիրավորանք ու գժտություն:

Մանկավարժները շուտով նկատեցին կատարված փոփոխությունը և դասարանին օրինակ բերելու առիթը բաց չէին թողնում: Դասարանում ստեղծված համերաշխության հետևանքով ջոկատը բարձր առաջադիմությամբ փակեց ուսումնական տարին:

ՍԵԴԱ ԱՂԻՆՅԱՆ
Էջմիածին, Ոսկեհատի միջն. դպրոցի ավագ ջոկատավար

է. ԿԱԼՆԵ

# ՄԵԾ ԴՈԳԻ ՓՈՐՁԸ

(Կատակ)



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Քանի դեռ ցուրտ էր, գազանաձագերի դպրոցի աշակերտները քրտնաջան դաս էին սովորում: Մեծ Դոգը գոհ էր նրանցից: Բայց գարնան արևի առաջին ճառագայթների հետ աշակերտներն սկսեցին դաս բաց թողնել, տնային հանձնարարությունները չկատարել:

Մեծ Դոգը, որ բոլորի կողմից հարգված չափազանց զուսպ ուսուցիչ էր, հիմա արդեն առիթ բաց չէր թողնում բարկանալու ու գրգռվելու համար:

— Այս ի՞նչ եք այստեղ խզմզել,— խոժոռ հարցրեց նա Ճերմակ Ուլիկին:

Ուլիկը մեղավոր տեսքով խոնարհեց իր ճերմակ գլուխը:

— Իսկ սա ինչ աղտոտություն է,— դասասեղանի վրայից Դոգը վերցրեց Խոճկորի կեղտոտ տետրակը...

Միայն Տնային փիսիկն էր շարունակում տքնաջան սովորել, երբեք չէր ուշանում դասերից և ամեն բան խընամքով գրի էր առնում իր տետրակում:

Բայց մի անգամ նա էլ դպրոց եկավ առանց դասերը սովորելու: Եվ նույնիսկ սկսեց ապացուցել, որ մարդկանց երեխաներն էլ հիմա դաս չեն սովորում:

— Այդպիսի բան չի կարող լինել,—վրդովվեց Մեծ Դոգը:

Արդեն մոտենում էին քննությունները գազանաձագերի միակ դպրոցում, որը փորձնական էր կոչվում:

Բայց մի՞թե ծույլերի հետ կարելի է որևէ բան փորձարկել: Մի անգամ Մեծ Դոգը աշակերտների մի այսպիսի խոսակցություն լսեց: Խոսում էր, ավելի ճիշտ, մլավում էր Փիսիկը: Մյուսները լսում էին:

— Ես ձեզ կասեմ, թե ինչպես է դա կոչվում,— շտապում էր հաղորդել Փիսիկը:—Ծածկաթերթիկ:

— Մկը՜կը, ծածկաթերթիկ,—կըրկնեց Ուլիկը:

— Իսկ ի՞նչ են անում այդ ծածկաթերթիկը:

Փիսիկը պատմեց իր գիտեցածն ու մարդկանց երեխաների դպրոցում տեսածը:

— Իսկ ինչպե՞ս են օգտվում դրանից:

Այս մեկը նա, ցավոք, չկարողացավ բացատրել: Բայց խոստացավ իմանալ:

Մեծ Դոգը լսեց, թե ինչ որոշեցին նրա աշակերտները՝

— Եկեք մենք էլ ծածկաթերթիկներ պատրաստենք:

Եվ սկսեցին պատրաստել: Նրանք թերթում էին դասագրքերը, ուշադրությամբ լրացուցիչ գրականություն ուսումնասիրում:

Վերջապես եկավ քննությունների առաջին օրը: Մինչ այդ Փիսիկն իմացել էր, թե ինչպես պետք է օգտվել ծածկաթերթիկից և սովորեցրել էր իր ընկերներին:

Դասարանում բոլորը նստեցին իրենց տեղերում և սկսեցին խնամքով թացքնել իրենց ծածկաթերթիկները:

Ներս մտավ Մեծ Դոգը: Նա ասաց.

— Ով իմ սեղանին կդնի իր ծածկաթե՛րթիկը, առանց պատասխանելու «երեք» կստանա: Իսկ ով ուրիշ գնահատական է ուզում ստանալ, կպատասխանի:

Փորձը հրաշալի անցավ:

Աշակերտներն ուսուցչի սեղանին դրին իրենց ծալծված ու ոլորած ծածկաթերթիկներն ու հրաշալի պատմեցին այնտեղ գրվածը:

Հետագայում, երբ Մեծ Դոգի ու նրա աշակերտների փորձը սկսեցին կիրառել նաև այլ դպրոցներում, «ծածկաթերթիկ» բառը փոխարինեցին «կոնսպեկտ» բառով:

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

# Ի՞ՆՉ ԱՐԺԵ ԸՆՏՐՈՂԸ

Կապիտալիստական երկրներում պառլամենտական ընտրությունների ժամանակ ահագին գումարներ են ծախսվում ռեկլամի վրա: Թեկնածուն ճամփորդում է երկրով մեկ, ընտրողների առաջ ելույթ ունենում ռադիոյով ու հեռուստատեսությամբ, ապացուցելու համար, թե ինչու իրեն պետք է ընտրել, ոչ թե իր մրցակցին: Իսկ դա հեշտ չէ, որպես կանոն, բուրժուական կուսակցությունների թեկնածուների քաղաքական հայացքները քիչ բանով են տարբերվում իրարից:

Ճապոնական պառլամենտի անդամներից մեկին՝ Տ. Ունոյին դժվար թվաց այդ ամբողջ կատակերգությանը մասնակցելը: Եվ նա որոշեց ուղղակի գնել ընտրողների ձայները, քանի որ փող ինքը ուներ: 250 միլիոն իեն (1 041667 դոլլար) նա «նվիրեց» ընտրողներին. դրամական ավանդներ ներդրեց մանր մասնավոր ձեռնարկություններում, նվերներ ուղարկեց՝ մեքենայից սկսած, մինչև արդուզարդի առարկաներ ուղղակի ընտրողների տները: Եվ քսան հազար երախտապարտ քաղաքացիներ նրան տվեցին իրենց ձայները:

«Փողով ինչ ասես ՝կառնես»,— հավաստիացնում է պառլամենտի անդամը:

ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ԽԱԲԱՐԲԶԱՆԸ





Աքլորը Կատվի վրա հոխորտաց.

— Ասում են, դու ինձ վատաբանել ես:

Եվ կտտացրեց նրա քթին:

Այծը Կատվի վրա մկկաց.

— Ասում են, դու ինձ վատաբանել ես:

Եվ պոզահարեց նրան:

Ձին խոշոր գլուխը թափ տվեց Կատվի վրա:

— Ասում են, դու ինձ վատաբանել ես:

Եվ հազիվ զսպեց, որ քացի չտա նրան:

Ուղտն իր գլուխն իջեցրեց մինչև Կատվի ականջը:

— Ասում են, դու ինձ վատաբանել ես:

Եվ հազիվ զսպեց իրեն, որ չթքի նրա երեսին:

Ասողը շունն էր եղել: Կատուն այդ իմացավ:

Մի օր, երբ Շունը սովորականի պես աչքերը փակ, բերանը բաց, լեզուն կախ քնել էր, Կատուն թաքուն

— Ծնունդդ շնորհավոր,— ասաց Աքլորը:

Շունը լուռ մնաց:

— Ծնունդդ շնորհավոր,— ասաց Այծը:

Շունը լուռ մնաց:

Ուղտն իր գլուխն իջեցրեց մինչև նրա ականջը:

— Ծնունդդ շնորհավոր,—ասաց Ուղտը:

Շունը լուռ մնաց:

— Կա-չկա Կատուն կերել է նրա լեզուն,— միաժամանակ պսացին Աքլորը, Այծը, Ուղտը:

Շունը գլխով արեց: Կենդանիները կարեկցեցին, ցավակցեցին, մխիթարեցին Շանը, հետո ամեն մեկն իր գործին գնաց:

Շունն այդպես էլ համր կմնար, եթե ուշացումով չգար Ձին ու մի լեզու նվեր բերեր նրան:

Կատուն դաս էր առել, կարծիք [illegible] Շանը չէր ասում, այլ նրան՝





լեզուն: Ծունը ցավից վնգստալով արթնացավ, ուզեց բռնել Կատվին, Կատուն ճարպկորեն թռավ ծառի վրա:

Ծան ծննդյան օրն էր, և նրա մոտ նվերներ առած եկան Աքլորը, Այծը և Ուղտը:

րանք չէին նեղանում Կատվից:

Ծունը մնացել էր Կատվի առաջ սևերես, Կատուն չէր ներում նրա խաբարբզանությունը: Ծանը ամեն տեսնելիս հիշում է, ճամփան ծռում, որ այդ խաբարբզանի հետ բառ չփոխանակի:







ՊԱՏՐԱՍՏԻՐ

# «Դ Ա Ր Բ Ի Ն»




Օգտագործվող նյութեր. լուցկու տուփ, նկարչական թուղթ:

Պատրաստելու ձևը.

Դարբնին նկարել թղթի վրա և մկրատով կտրել: Ջրաներկով կամ գուաշով ներկել:




Կետագծով նշված մասերը ծալել:

Մուրճը կտրել, անջատել սալից:

Ա կետը լուցկու տուփի վերին մասին, Բ կետը տուփի դարակին սոսնձել:

Տուփը բացել-փակելիս դարբինը մուրճով հարվածում է սալին:

ՔՈ ՁԵՌՔՈՎ




Բացի գերմանացի ֆաշիստների դեմ մղած պատերազմից, որը իր հետ երևան բերեց հացի քարտեր, օդային տագնապ, լուսաքողարկում և ամենից վատը՝ մահվան բոթաբեր թղթեր, մեր մանկության տարիներին ինձ ու եղբորս գլխին մի փորձանք էլ եկավ:

Երբ լրացավ իմ տասնմեկ, իսկ եղբորս ինը տարին, մեր ծնողները հանկարծ նկատեցին, որ բնավորությամբ իրար չեն բռնում ու բաժանվեցին:

Դատարանը գույքն ու երեխաներին բաժանեց՝ ինձ հասցնելով մորս, իսկ եղբորս, որին այն ժամանակ Հրանտիկ էինք ասում՝ հորս: Եվ կարծես ինքնըստինքյան այնպես եղավ, որ մայրական գծով տատս, մորաքույրերս, քեռիներս ու մյուս բարեկամները հիմա պատկանում էին ինձ, իսկ հայրիկի համապատասխան բարեկամները՝ իմ եղբայր Հրանտիկին:

Հենց սկզբից էլ իմ բախտն ավելի բերեց, քան նրանը: Իմ մեղմաձայն, հեզ, բարեհամբույր տատը՝ բարության մարմնացում էր: Ես նրան Մեծ-Մայրիկ էի ասում: Բոլոր բարեկամները նրան այդպես էին կոչում, քանի որ նա մեր տոհմի ամենատարեցն էր:

Եղբորս բաժին ընկած տատը խիստ ու չար բնավորություն ուներ, նիհար էր ու զարմանալի շարժուն, հագնում էր ազգային տարազ՝ մուգ կտորից քթկալ, որ ծածկում էր բերանն ու ծնոտը, վզի մոտ մի կոճակով կոճկվող վառ կարմիր շապիկի վրայից՝ կանաչ եռափեշ արխալուղ, լայն կաշեգոտի, որ զարդարված էր ցարական ժամանակների բազմաթիվ արծաթե դրամներով: Նանին, — այդպես էինք ասում հայրական տատիս,— շուտ էր այրիացել և մեծ դժվարություններով մենակ մեծացրել էր իր երեք երեխաներին: Եվ չգիտես այդ, թե մի այլ պատճառով, բնավորությամբ նմանվել էր տղամարդու: Գյուղում պատմում էին, որ նանին ջահել ժամանակ որսորդների հետ գնում էր անտառ արջաորսի:

Երեխաները, որ շատ էին սիրում ուրիշների այգիներում հասած թութ ուտել, վախենում էին մոտ գալ նանի այգուն. օրվա մեծ մասը նա նրստած էր պատշգամբում, ճախարակի մոտ և, չընայած բրդյա բարակ թելը անընդմեջ ձգվում-երկարում էր նրա բարձր պահած ձախ ձեռքի մեջ,

նանին ակնդետ հետևում էր իր տիրույթին: Ծախարակի կողքին մշտապես դրված էր ճիպոտների մի խուրձ և հսկայական պարսատիկ հիշեցնող փայտե երկժանի եղան: Եվ վայն եկել տարել էր հարևանների խոզերին, ճուտերին, ուլերին, եթե խախտեին այն սահմանը, որ բաժանում էր նրանց տերերի ու նանիի հողակտորները: Հենց որ նկատում էր տերևախիտ ննենու տակ խաղաղ արածող խոճկորին, նանին ձեռքն էր առնում ծանր փայտերից մեկը, մեկ-երկու վայրկյան նշան էր բռնում իր խռնչացող զոհին, ապա ճարպիկ, անվրեպ հարվածով նետում էր զենքը: Եվ խոճկորը աղեկտուր ճղճղոցով գլխապատառ պուկ էր տալիս՝ նանի բարձրաձայն անեծքների ուղեկցությամբ.

— Վայ գետինը մըտնեք դու էլ, քո տերն էլ: Տիրոջդ էշը ջրաղացի ճամփին սատկի: Չորանա խաղողի այգին ու տան մի կաթիլ գինին կտրվի:

Հենց որ դպրոցներում դասերը վերջացան և սկսվեց քաղաքի տանջալի շոգը, մեր բաժանված ծնողները որոշեցին ինձ ու եղբորս ուղարկել իրենց մայրերի, այսինքն Մեծ Մայրիկի ու նանի մոտ՝ Ջորագետ:

Հարկ չկա ասելու, որ ես ու Հրանտիկը մեծ ուրախությամբ էինք լքում քաղցած քաղաքը, չէ՞ որ դեռ պատերազմ էր, մենք ուզում էինք շուտ մեկնել գյուղ, ուր ուտելիքի հարցը, հատկապես ամառը, անհամեմատ լավ էր:

Երեկոյան մեր ծնողները ինձ ու եղբորս նըստեցրին գնացք, ուղեկցող կնոջը խնդրեցին աչք պահել վրաներս, և մենք ճանապարհ ընկանք:

Հաջորդ օրը, հենց որ գնացքը կանգ առավ, մենք պատուհանից տեսանք մեր տատերին: Մեծ Մայրիկն ու նանը կանգնել էին իրարից քիչ հեռու, նայում էին ուղիղ իրենց դիմաց և կարելի էր կարծել, թե բոլորովին օտար են իրար:

Հենց որ վագոնից իջանք, նրանք նետվեցին դեպի ինձ ու եղբայրս, համբուրեցին մեզ. նանը գիրկն առավ իր թոռանը, այսինքն Հրանտիկին, իսկ Մեծ Մայրիկը՝ իրենին՝ այսինքն ինձ:

Երբ ես ու Մեծ Մայրիկը քայլում էինք դեպի տուն, ես շուռ եկա ու նայեցի նանին ու Հըրանտիկին: Նույնն արեց և եղբայրս ու թափահարեց ձեռքը, բայց ոչ Մեծ Մայրիկը, ոչ էլ հատկապես նանը ոչ մի անգամ ետ չնայեցին...

*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# ՈՐՈՏԱՆԸ

*ԳՈՒՐԳԵՆ ԲԱԲԱՅԱՆ*

Որոտներ են եկել, մարել,
Որոտանի խոր կիրճերում.
Քանի դարեր են մոխրացել
Լերկ ժայռերի կնճիռներում:
Ժայռեր իրար ուսի թիկնած,
Կիրճը՝ կիրճին դարձած տանիք.
Ժայռեր՝ ծ.սրավ, շոգից շիկնած,
Ջորում խենթ գետ՝ ալիք-ալիք...

Ջրի ճողփյուն, ջրի տագնապ,
Պարող ջրեր քարեր գրկած,
Ժիր-ժիր ձկներ քարերի տակ,
Ջրեր՝ իրենց ձայնից խրտնած:
Դարսվոր վեճ քարի, ջրի,
Ջրի հառաչ, համբույր ու լաց,
Իսկ կիրճերում քանի՜-քանի՜
Արահետներ կան խճճված...

## *Աշխարհի չափ սիրելի*

*ԲԱԳՐԱՏ ԱԼԵՔՅԱՆ*

Ջրավազանում լողում են
երեխաները և ձկները...
Երբ ջրավազանում քշանում է ջուրը,
երեխաները թափվում են ափ,
ձկները նվաղում են աղետի ահից
և տերևները շփոթմունքից գունատվում են...
Եվ գալիս է ջուրը,
ինչպես ժպիտ՝ երեխաներին,
ինչպես օդ՝ ձկներին,
ինչպես գույն՝ տերևներին,
և ավազանի լայնությամբ
վառվում է դեմքը կեսօրի,
և օրը դառնում է աշխարհի չափ անծայր
ու սիրելի:



Պատասխանում է ՀՍՍՀ ժող. արտիստ, պետական մրցանակի կրկնակի դափնեկիր ՍՈՍ ՍԱՐԳՍՅԱՆԸ

# ԻՆՉՊԵՍ

Մենք՝ ամեն մեկս ծնվում ենք արդեն մի բան, ծնվում ենք մեր հատուկ կոչումով, երջանիկ ենք, եթե գտնում և տեր ենք կանգնում մեր կոչմանը, և անսահմանորեն դժբախտ, եթե արհեստականորեն դառնում ենք այն, ինչ չենք: Այդ դեպքում պատիժ ենք դառնում նաև հասարակության համար: Ուրեմն կարծում եմ «դառնալ» չի կարելի: Մարդը պետք է կարողանա լսել սեփական հոգու կանչը, ունկնդրել սեփական էությանը, ականջել և անսալ...

Երիտասարդ մարդուց հսկայական արիություն է պահանջվում գնալ մոդայիկն հակառակ, ճիշտ գնահատել սեփական ուժերը: Հակառակ դեպքում ժողովուրդը կունենա միջակ մի դերասան, միջակ մի բժիշկ և կընկորցնի առևտրի տա-

Սովորում եմ Սևանի № 2 միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանում: Ուզում եմ որոշ տեղեկություններ ստանալ իմ ընտրած ապարեգի վերաբերյալ:

Ցանկանում եմ դառնալ կինոդերասան, չգիտեմ ինչ կարդալ, ինչպես նախապատրաստվել, ուր դիմել, ընդունելության ինչ քննություններ պետք է հանձնել:

*ՄԱՐՏԻԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

# ԴԱՌՆԱԼ ԿԻՆՈԴԵՐԱՍԱՆ

դանդավոր մի կազմակերպիչ, կամ տաղանդավոր մի քարտաշ, այգեգործ:

Իսկ ինչո՞ւ հատկապես կինոդերասան (վերադառնանք այնուամենայնիվ մեր նամակին): Երևի այն պատճառով, որ էկրանի վրա շատ հաճելի է ինքն իրեն տեսնել, որ կինոաստղերը մշտապես ուշադրության կենտրոնում են. ծափեր, ծաղիկներ, ժուռնալների շապիկներին գունավոր նկարներ, կինոփառատոներ, մրցանակներ և այլն, և այլն:

Այս բոլորը արտաքին շքեղություն է, և թող չհիասթափվեն թյուր պատկերացում ունեցողները, անցողիկ, փոքրիկ էպիզոդներ են իսկական դերասանի կյանքում:

Այո՛, կինոն ավելի, քան թատրոնը, դերասանին դարձնում է հանրահայտ: Սակայն ասենք նաև, որ աշխարհում շատ քիչ են այն դերասանները, որոնք լոկ նկարահանվում են կինոյում, այսինքն «մաքուր» կինոդերասաններ են: Իսկապես մեծ արտիստի համար ամեն ինչ սկըսվում է թատրոնից, իսկական արտիստի սըրտում մշտական կարոտ կա թատրոնի նկատմամբ, քանի որ հենց թատրոնում է հղկվում նրա վարպետությունը, թատրոնն է կրթում ու ձևավորում նրան որպես արվեստագետ: Մեկ խոսքով ասած, թատրոնում են դառնում դերասան:

Սա հանրահայտ ճըշմարտություն է:

Հիմա դառնանք նրան, թե ինչ է իրենից ներկայացնում դերասանի գործը: Ավելի ճիշտ՝ ինչպես է անցնում նրա կյանքը: Նախ և առաջ աշխատանք՝ ծանր ու դժվարին... Այն, ինչ դուք տեսնում եք էկրանի վրա (մեկ կամ կես րոպե տևողությամբ կադր) ժամերի, իսկ երբեմն էլ օրերի քրտնաջան աշխատանքի արդյունք է: Բացի նախնական փորձերից, նույն տեսաբանը հարկ է լինում կրկնել բազմաթիվ անգամ՝ վեց, յոթ, գուցե և քսան անգամ: Կինոդերասանը պետք է պատրաստ լինի աշխատելու օրվա բոլոր ժամերին, անկախ սեփական տրամադրվածությունից (այդ մասին նրան ոչ ոք չի հարցնում): Առավոտվա ժամը հինգին, գիշերվա ժամը երկուսին, երեքին, պավիլիոնում թե դրսում, կիզիչ շոգին թե ցուրտ ձմեռը: Ի դեպ, նաև այսպես՝ հաճախ ցուրտ քամու տակ պետք է ձևացնես, թե շոգում ես և ընդհակառակը: Բացի զուտ ստեղծագործական դժվարություններից և

բարդություններից, կինոյում գոյություն ունեն բազմապիսի տեխնիկական անհարթություններ: Հսկայական ֆիզիկական ուժ և ամուր նյարդեր է պահանջվում դիմանալ «կինոյական քաշքշուկներին». ասենք, դու տրամադրվել ես, պատրաստ ես ինչ-որ բարդ մի տեսարան խաղալ, և հենց այդ պահին կինոխցիկը փչանում է, լույսը շեղվում է, մի ինչ-որ իր ծուռ է՝ ասենք դույլը տասը սանտիմետր աջ կամ ձախ է դրված, արև է հարկավոր՝ ամպ է, ամպամած եղանակ է հարկավոր՝ արևը փայլում է ողջ շքեղությամբ և այլն, և այլն... Գումարենք նաև, որ կինոդերասանը ստիպված է հաճախ բացակայել տնից, շաբաթներով ընկնել սար ու ձոր, օտար քաղաքներ, մնալ արևի, անձրևի տակ, երբեմն քաղցած, առանց ջուր, մի խոսքով՝ ապրել առանց տարրական հարմարությունների...

Այս է իրական կյանքը կինոդերասանի, նրա առօրյան, կենցաղը: Մի քիչ ավելի, մի քիչ պակաս...

Նորից վերադառնանք մեր հարցին: «Ուզում եմ դառնալ դերասան»: Ինչպիսի՞ դերասան: Կան դեր-ասաններ, սրանց գլխավոր դժվարությունը դերը անգիր անելն է: Եվ կան արտիստներ՝ այսինքն ստեղծագործողներ, արվեստագետներ: Սրանց կյանքը շատ է դժվար, լի տառապանքներով, հոգսերով: Ունենալ քաղաքացիական դիրքորոշում, պիտանի լինել ժողովրդին, ասելիք ունենալ, ահա ամենակարևորը, որ արտիստական բնատուր ձիրքի հետ պահանջվում է դերասանից:

Մոռանանք մի պահ և դժվարությունները (ամեն ասպարեզ իր դժվարություններն ունի և վախեցնելու համար չէ, որ ասվեց այդ մասին), մոռանանք և անշուշտ գոյություն ունեցող հաճելի պահերը: Նայեցեք ինքներդ ձեր ներսը, ըստուգեցեք դերասան դառնալու ձեր տվյալները, ցանկալ և սիրելը քիչ է: Եվ եթե, այնուամենայնիվ, որոշեք դառնալ արտիստ արվեստագետ, ապա ուրեմն ձեզ կմնա կրթվել ամենալայն իմաստով, այնքան, որ ետ չմնաք ձեր ժամանակի առաջադեմ մտավորականից, ետ չմնաք դահլիճում նստած հանդիսատեսի կուլտուրական մակարդակից: Մընում է կոփվել և՛ ֆիզիկապես, և՛ հոգեպես, քանզի թատրոնը (ուրեմն և կինոն) թույլերի տեղը չէ: Մնում է հղկեք ձեր մարմինը, դարձնեք այն ավելի ճկուն, պլաստիկ, հղկեք ձեր առողջությունը, որ այն լինի պարզ ու հստակ, վարժեցնեք ձեր հիշողությունը:

Եթե այս ամենին պատրաստ եք, եթե այս ամենը ունեք, ուրեմն դուք դերասան եք արդեն, արվեստագետ եք արդեն... Պայմանով, իհարկե, որ կա ամենագլխավորը—տաղանդ, մի բան, որ անհնարին է ձեռք բերել, որի ինչ լինելը չի բացատրվում, որը կամ կա, կամ չկա:

Իսկ ընդունվելու համար պետք է դիմել Երևանի գեղարվեստաթատերական ինստիտուտ և քննություններ հանձնել մասնագիտությունից (բեմական խոսք, բեմական վարպետություն, ռիթմիկա), հայոց լեզվից (գրավոր, բանավոր) և պատմությունից: Բացի այդ, նախնական ծանոթության համար շատ քաղաքներում կան պետական թատրոններ կամ թատերական խմբակներ, որոնց ղեկավարները մասնագետ են և շատ բանով կարող են օգնել:



ՔՐԻՍՏԻԱՆ ՊԻՆՈ

# Լեգենդ կեղծաստ Մեղրին

Այս պատահել է շատ ու շատ հնում, երբ անտառները դեռ չէին վերածվել կանաչ ու խաղաղ զբոսավայրերի: Բազմաթիվ վտանգներ կային թաքնված նրանց դարավոր ծուռտիկ կոճղերի տակ, բարձր ծառաբների մեջ, անանցանելի թավուտներում: Մարդակերները, անտառի ոգիները, վըհուկները վայրի պարեր էին պարում այնտեղ: Ամենուրեք վխտում էին գիշատիչ կենդանիներ, որոնք իրենց քաղցը հագցնելու համար հարձակվում էին ամեն շնչավոր արարածի վրա:

Փոքրիկ Ժանը ծնողների հետ ապրում էր մեծ անտառի բացատում, ծղոտե տանիքով աղքատ խրճիթում: Մայրը աչքը չէր կտրում նրանից, հատկապես, երբ հայրը տանը չէր լինում: Ժանը շատ համարձակ տղա էր, և մայրը վախենում էր, որ նրա համարձակությունը մի փորձանք կբերի:

Պետք է ասել, որ այն ժամանակ տղաները վախկոտ ու նրբակազմ չէին: Նրանք չէին վախենում ոչ գազաններից, ոչ խավարից և մայրիկին չէին կանչում, երբ ընկնում էին ու քերծում իրենց ծունկը կամ ձեռքը:

Եվ ահա մի անգամ Ժանին հաջողվեց ծլկել տանից: Դա այն ժամանակ էր, երբ մոշի թփերը ծածկվել էին կարմրավուն պտուղներով, որոնք այնքան են սիրում երեխաները: Առանց մայրիկին ու հայրիկին հարցնելու, Ժանը գնաց մութ անտառ: Նա որոշել էր ուզածի չափ մոշ ուտել: Այդպես էլ արավ: Հատապտուղը շատ-շատ էր և այնքան հյութալի ու հասուն, որ ճխլվում էր տղայի ձեռքում ու շըրթունքների վրա, և շուտով նա մինչև ականջները ներկվեց կարմիր մրգահյութով:

Բայց այդ անտառում ոչ արահետ կար, ոչ էլ նշաններ ծառերի վրա: Ոչինչ չկար, որ օգներ գտնելու ճանապարհը: Անտառ մտնելը հեշտ էր, իսկ դուրս գալը...

Հատապտուղ խժռելիս Ժանը չէր մտածում տան մասին, բայց երբ պայթելու չափ կշտացավ, հիշեց հարազատ խրճիթը: Սակայն էլ ինչ: Նա պտտվեց հաճարենիների ու կաղնիների մեջ, թավուտներից ընկավ թըփուտները և բոլորովին մոլորվեց:

Դուրս գալով մարգագետին, Ժանը հանկարծ լսեց մի սարսափելի աղմուկ, կարծես փոթորիկ պայթեց, և նրա առաջ ցցվեց մի շիկահեր հսկա, որն ամենաբարձր ծառի հասակին էր: Նա ծառերի տերևները փչելով զվարճանում էր:

— Ահա և իմ ճաշը,— մռնչաց հսկան, տեսնելով տղային:— Գիտեի, որ այսօր բախտս բերելու է:

Նա նստեցրեց Ժանին իր ձեռքի ափի վրա, ճիշտ այնպես, ինչպես դուք զատիկին եք նըստեցնում:






— Զուտեք ինձ, հոր-եղբայր,—ողորմագին ա-սաց տղան:— Մայրիկս շատ կվշտանա...

Հսկան ցնցվեց ծիծա-ղից և ինքն էլ չնկատեց, որ ցնցվելիս տապալեց մի քանի կաղնի:

— Իսկ իմ մայրը կե-րավ իմ բոլոր եղբայր-ներին, և ես կենդանի մնացի միայն այն պատ-ճառով, որ ինքս կերա նրան: '

— Ես այնքան պստիկ եմ,— համոզում էր նրան ժանը,— դուք ինձ կուլ կտաք և ոչ մի համ չեք ստանա: Մի սպանեք ինձ, ես ձեզ պետք կգամ:

— Իմ ինչի՞ն է պետք քեզ նման բզեզը:

— Ես անտառում կը-հավաքեմ ձեզ համար ամենագեղեցիկ քարերը, ամենագեղեցիկ ծաղիկ-ները: Դուք վերևից դը-րանք չեք նկատի:

Հսկան մտածմունքի մեջ ընկավ: Նրա ճակա-տի վրա առաջացան այնպիսի խոր ծալքեր, որոնցից յուրաքանչյուրի մեջ Ժանը կարող էր թաքնվել:

— Ես քեզ համար գու-ցե մի աշխատանք գըտ-նեմ,—վերջապես ասաց մարդակերը:— Տեսնո՞ւմ ես, ես համարյա ամբող-ջովին ճաղատացել եմ, չնայած ընդամենը հար-յուր հիսուն տարեկան եմ, բայց մեր ցեղն է այդ-պիսին: Եթե դու անտա-ռում գտնես իմ գլխից ըն-կած մազերը, ես չեմ սպանի քեզ, դու կդառ-նաս իմ ընկերը և այն ժամանակ կարող ես չվախենալ վայրի գա-զաններից: Իսկ եթե չը-գտնես՝ կորած ես. կամ ես կուտեմ քեզ, կամ գայ-լը, կամ հովազը: Եվ տես, հա՜, չփորձես փախչել:

— Կանեմ ինչ որ կա-րող եմ,—պատասխանեց Ժանը, զննելով հսկայի նոսր մազերը որոնք կոշտ էին, շեկ ու կարճ:

Հսկան իջեցրեց տը-ղային, որն անմիջապես սկսեց որոնել: Բայց ինչ-քան էլ նայեց թփերի ու ձարխոտերի մեջ, ինչքան էլ փորփրեց մամուռը ինչքան էլ շուռումուռ տվեց քարերը, որոնք ի-րենից ծանր էին, ոչ մի մազ չգտավ: Նա համա-ռորեն շարունակեց փնտրել: Փշերն ամբող-ջովին ծակծկեցին նը-րան, քարերը քերծեցին նրա ոտքերը, բայց մա-զեր չկային ու չկային: Ժանն արդեն լրիվ ու-ժասպառ էր եղել, նրա փոքրիկ ոտքերը դողում էին ու ծալվում, երբ նա հայտնվեց բարձրահա-

պակ սոճիների մեջ: Այստեղ նա հանկարծ սայթաքեց ու ընկավ: Վեր կենալով նկատեց, որ ծնկներին շատ փշատերևներ են կպել, որոնք սոսնձվել էին ծառի խեժով: Ժանի գլխում մի միտք ծագեց: Նա հավաքեց սոճիների ամենահաստ ու երկար փշերը, ծառաբներից պոկեց խեժը և փունջ կազմելով փշերն իրար կպցրեց: Ճիշտ է, փունջն այնքան էլ ամուր չստացվեց, բայց լավ տեսք ուներ:

Վերջացնելով աշխատանքը, Ժանն սկսեց ձայն տալ հսկային:

Վերջապես հսկան հայտնվեց:

— Գտա՞ր մազերս,— հարցրեց նա:— Հիմա իսկական ճաշելու ժամանակն է: Եթե քեզ չպիտի ուտեմ, ապա քանի դեռ չի մթնել, հարկավոր է մի տեղից այծ-մայծ ճարել:

— Գտել եմ, հորեղբայր: Բայց խոնավությունից ձեր մազերը դարձել են կոշտ ու կըպչուն, գույնն էլ առաջվանը չէ: Համենայն դեպս, իմ կարծիքով, դրանք կսազեն ձեզ:

Հսկան պարզամիտ էր: Նա միայն հասկացավ, որ այդ փունջը կարող է ծածկել իր այլանդակ ճաղատը և այն խնամքով տեղավորեց գլխին: Հետո նայելով ճահճի մեջ, հիացավ իրենով և ուրախությունից այնպես գոռաց, որ ամբողջ ջրի մակերեսը կնճռոտվեց, իսկ վախեցած գորտերը ճահճից դուրս թռան տեսնելու, թե ինչ է պատահել:

— Դու արժանի ես մեծ պարգևի, բզեզ,— ասաց հսկան, խաղաղվելուց հետո: Այդ ասելով նա գրպանից անփութորեն հանեց մի ձույլ ոսկի և մեկնեց Ժանին:

Տղան վերցրեց ոսկին և իսկույն գլորվեց ցած. այնքան ծանր էր ձուլակտորը:

Այդ ժամանակ հսկան Ժանին ոսկու հետ միասին դրեց ափի վրա և զգուշորեն իջեցրեց անտառի բացատը:

Արդեն մութն ընկնում էր, երբ Ժանը շատ հանգիստ վերադարձավ հայրիկի ու մայրիկի մոտ, բերելով նրանց մի ամբողջ հարստություն: Նըրա մտքով էլ չէր անցնում, որ ինքը պատրաստել է աշխարհում առաջին կեղծամը:

*Ֆրանս. Թարգմանեց՝*

ՀԵՆՐԻԿ ԲԱԽՉԻՆՅԱՆ




● Մի անգամ թուղթ պատրաստող վարպետը ցրվածության պատճառով մոռանում է սոսինձ խառնել զանգվածի մեջ: Թուղթն ստացվում է փափուկ: Ինժեները վարպետին հանդիմանելով փըչացրած արտադրանքի համար, ուզում է ապացուցել, որ այդպիսի թղթի վրա հնարավոր չի գրել:

Նա գրիչով մի հաստ գիծ է քաշում և... թանաքը անմիջապես չորանում է:

Այդպես պատահականորեն գտնվեց ծծան թուղթ պատրաստելու միջոցը:

● Պարզելու համար, թե ինչպիսի վնաս կարող են հասցնել առնետները, ամերիկյան հա՛պսարաններից մեկում կատարեցին մի յուրօրինակ փորձ. առնետներին տրվեց գործելու լիակատար ազատություն և նրանք երկու ամսվա ընթացքում ոչնչացրին կամ անպետքացրին 1800 պարկ աղ, 1724 պարկ սուրճ, 14 տոննա ալյուր և մոտ 200 տոննա շաքար:

● Թվաբանական խնդիրների առաջին ժողովածուն աշխարհում կազմել են հայ մաթեմատիկոսները 1200 տարի առաջ: Այդ ժողովածուի ձեռագիրը գտնվում է Երևանի Մատենադարանում:

# ԿՈՄԻՏԱՍԻ ԱՆՎԱՆ ՔԱՌՅԱԿԸ

1924 թվականին Մոսկվայի կոնսերվատորիայի չորս ուսանողներ Ավետ Գաբրիելյանի գլխավորությամբ ստեղծեցին լարային քառյակ, որը հետագայում ամենաբազմափիսի դափնիների ու կոչումների շարքում նվաճեց նաև թերևս ամենապատվավորը՝ մեծ Կոմիտասի անունով կոչվելու իրավունքը: Ավետ Գաբրիելյանը, Ռաֆայել Դավիդյանը, Հենրիկ Թալալյանը և Սարգիս Ասլամազյանը Կոմիտասի անվան քառյակի համբավը տարան մեր երկրի սահմաններից դուրս, իրենց անզուգական վարպետությամբ գրելով սովետական կատարողական արվեստի ամենապայծառ էջերից մեկը:

1976 թ. քառյակն իր համերգային գործունեությունը շարունակեց նոր կազմով: Դեռևս 1970 թ. որպես երկրորդ ջութակ քառյակ էր հրավիրվել Ժակ Տիբոյի ու Մարգարիտ Լոնգի (Փարիզ) և Հենրիկ Վենյավսկու (Պոզնան) միջազգային մրցույթների դափնեկիր, Մոսկվայի կոնսերվատորիայի ավարտական կուրսի ուսանող Էդվարդ Թադևոսյանը: Տաղանդավոր ջութակահարը թեև այսօր էլ շարունակում է ելույթներ ունենալ որպես մենակատար, այնուհանդերձ, իր ժամանակի մեծ մասը նվիրեց քառյակին. 1976 թ. ստանձնելով առաջին ջութակի պարտականությունները: Նույն թվականին էլ քառյակ հրավիրվեցին երիտասարդ շնորհալի երաժիշտներ Հակոբ Մեքինյանը (երկրորդ ջութակ), Յակով Պապյանը (ալտ), Ֆելիքս Սիմոնյանը (թավջութակ), և սկսվեց Կոմիտասի անվան քառյակի երկրորդ երիտասարդությունը:

Սկսվեց ստեղծագործական բազմախոստում որոնումներով ու համերգային ակտիվ գործունեությամբ: Չորս տարում քառյակը մասնակցել է 5 փառատոնի, տվել երկու հարյուրից ավելի համերգներ: Նրան հիացմունքով են ունկնդրել ոչ միայն Հայաստանում ու Սովետական Միությունում, այլև Ֆրանսիայում, ԱՄՆ-ում ու Կանադայում, Ավստրիայում ու Պորտուգալիայում: Նուրբ երաժշտականությունը, կաշառող արտիստականությունը, կատարողական բարձր վարպետությունը Կոմիտասի անվան քառյակին սիրված ու ցանկալի հյուր են դարձրել: Քառյակի ռեպերտուարը հարուստ է ու բազմազան՝ ընդգրկած արևմտաեվրոպական կոմպոզիտորների ստեղծագործություններից մինչև Ս. Ասլամազյանի՝ կոմիտասյան անզուգական՝ մշակումները, և յուրաքանչյուր ստեղծագործություն քառյակի կատարմամբ ստանում է կոմիտասցիների ուրույն, անկրկնելի մեկնաբանությունը: Քառյակի ընստեղծագործական նվաճումների գնահատությունն է նաև այն, որ 1978 թ. Էդվարդ Թադևոսյանին շնորհվեց ՀՍՍՀ վաստակավոր արտիստի պատվավոր կոչում:

«Կոմիտասի անվան քառյակը հայ երաժշտական մըշակույթի զարդն է»,— տարիներ առաջ ասել է Արամ Խաչատրյանը: Եվ այսօր էլ իր երկրորդ երիտասարդությունն ապրող քառյակը, շարունակելով ու զարգացնելով ժառանգած հարուստ ավանդույթները, աշխարհի համերգասրահներով պատվով է տանում մեծ Կոմիտասի անունը:

---

**ՄԱՄՈՒԼԸ ԿՈՄԻՏԱՍԻ ԱՆՎԱՆ ՔԱՌՅԱԿԻ ՄԱՍԻՆ**

Սուրբ Վիկտորիա տաճարում զարմանահրաշ Կոմիտաս քառյակը իր բարձրագույն արվեստով տակնուվրա արեց մեր սրտերը:

(«Լը Սուար», Ֆրանսիա, 1978)

Ռոման քաղաքը հյուրընկալեց մեծ տաղանդի տեր հըռաշալի արտիստների: Ջութակի, ալտի և թավջութակի չորս հնչյունային արքայազները սավառնում էին այնպիսի ոլորտներում, որտեղ բանականությունն ու զգացմունքը ինչպես երբեք միաձույլ էին...

(«Լը դոֆին լիբերե», Ֆրանսիա, 1978)

Հասարակությունը հիացմունքով էր ընդունում Կոմիտասի անվան քառյակի համերգի յուրաքանչյուր համարը, շնորհակալություն հայտնելով կատարողական բարձր արվեստի համար: Ունկնդիրները երկարատև ծափահարություններով ընդունեցին Մոցարտի փայլուն կերպով կատարված ստեղծագործությունները:

(ՏԱՍՍ-ի հաղորդագրությունը Ավստրիայից, 1980)

# ԹԱՑ ԵՐԵՍԱՐԲԻՉԻ ԳԱՂՏՆԻՔԸ

*ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ*

Նորահարս Մանիկը հարսանիքից որոշ ժամանակ անց, ինչպես կարգն է, եկավ հերանց:

Մայրը հետաքրքրվեց.

— Դե, աղջիկս, պատմիր տեսնենք, ո՞նց ես, վարժվո՞ւմ ես կեսուրիդ տան նիստուկացին: Հո ծուլություն չե՞ս անում...

— Ամեն բան շատ լավ է, մայրիկ... Ամենքն էլ սաստիկ հոգատար են իմ նկատմամբ: Այնքան ուշադիր են, այնքան մեղմ, որ նույնիսկ ամաչում եմ... Չեն թողնում մատս մատիս խփեմ...

Եվ երկու ցուցամատները բերեց-բերեց ու... իրար չխփեց:

Մայրիկն անսպասելի անհանգստացավ:

— Նրանք քաղաքավարի մարդիկ են, Մանիկս, — ասաց, — բայց դու հո գիտես՝ ինչպես պիտի պահես քեզ... Դու չպիտի սպասես՝ մինչև քեզ հիշեցնեն, թե ինչ է պետք անել... Դու էլ պիտի հոգատար և ուշադիր լինես կեսուրկեսրարիդ նկատմամբ, միշտ պատրաստակամ պիտի լինես և, ի սեր աստծո, երբեք-երբեք թույլ չտաս, որ հանկարծ ստիպված լինեն դիտողություն անել քեզ: Չէ՞ որ դա նրանց էլ հաճելի չի լինի քեզ դիտողություն անելը:

— Ի՞նչ ես ասում, մա, ի՞նչ ես ասում... Եթե նույնիսկ որևէ բան սրրտովս չի, ես լռում եմ, ոչ հարցնում եմ՝ ինչո՞ւ է այդպես, ոչ էլ դժգոհում:

— Այդ ի՞նչ ես խոսում,— էլ ավելի անհանգստացավ մայրիկը,— այդ ի՞նչն է, որ սրտովդ չէ...

— Գիտե՞ս, մայրիկ,— խորը շունչ քաշեց ու ըրգույշ սկսեց Մանիկը,— նրանց տան երեսսրբիչը միշտ լրիվ թաց է լինում... Այնքան տհաճ է, բայց ես ինձ շատ համեստ եմ պահում, մինչև հիմա այդ մասին ծրպտուն չեմ հանել...

— Ամա՞ն, քոռանա՞մ ես, Մանիկս, — ասաց մայրիկը:— Դու խայտառակ պիտի անես մեզ:

— Վա՞յ,—ապշեց Մանիկը,—ինչո՞ւ, մայրիկ:

— Դու ի չարն ես գործադրում նրանց բարի ու նուրբ վերաբերմունքը, աղջիկս... Ինչո՞ւ ես դու այդքան շատ քնում:

— Շատ քնո՞ւմ, — զարմանքից կարկամեց Մանիկը:— Ո՞վ քեզ ասաց, որտեղի՞ց իմացար:

— Քեզնից, Մանիկս, քեզնից իմացա: Դու ինքդ ասացիր... Երեսսրբիչը թա՛ց է լինում, որովհետև նրանք շատվոր են, իսկ դու ամենքից ուշ ես վեր կենում:

Մանիկը շատ զարմացավ մոր խորաթափանցության վրա:

Եվ նա որոշեց հաջորդ օրվանից ամենքից շուտ վեր կենալ անկողնից, որովհետև չոր երեսսրբիչը փափուկ է ու տաք և թացից շատ ավելի դուրեկան:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*





# ԻՄ ՄՏԵՐԻՄ ԸՆԿԵՐԸ

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ես ու Կարենը մտերմացանք այն օրվանից, երբ նա եկավ մեր դասարանը: Այդ օրը ես օգնեցի նրան լուծելու մաթեմատիկայի խնդիրը և հետո ամիթ եղավ և ինքն էլ ինձ պաշտպանեց Ռուբիկի ու Մանվելի հերթական գրոհից:

Մինչ այդ ես շատ էի նախանձում Ռուբիկին ու Մանվելին: Ինչպիսի՜ համերաշխությամբ էին երկուսով փախչում դասերից, հալածում ինձ դպրոցի միջանցքում: Հիմա ես մենակ չէի, իմ մտերիմ ընկերն ունեի: Ինձ համար ծանր էր լսել, թե ինչպես նրան երկտարեցի էին անվանում և երբ նա գրատախտակի մոտ կմկմում էր, ետևի նստարանից ականջիս էր հասնում Ռուբիկի փսփսոցը.

— Ընկերդ նեղն է ընկել...

— Փրկի՛ր, խեղդվում է,—հուշում էր Մանվելը:

Կարենը նրանց երկուսից էլ ուժեղ էր, խոսքի բռնվելիս թեև դժվարանում էր նրանց հարկավոր պատասխանը տալ, բայց այնքանն էլ բավական էր, որ բռունցքները սեղմում էր և Ռուբիկն ու Մանվելը հավերի պես այս ու այն կողմ էին փախչում: Դա ինձ այնքան ոգևորեց, որ ես մի անգամ (իհարկե, Կարենը կողքիս էր) նրանց երեսին

համարձակվեցի բղավել, ասելով, թե Կարենը շատ ընդունակ է և եթե ուզենա գերազանցիկ կդառնա... Դուք չեք կարող, նա կարող է։

Պատասխանս ստացա դասերից հետո։ Ռուբիկն ու Մանվելը ինձ խրատեցին իրենց ձևով։ Նոր վերնաշապիկիս վրա դասի ժամանակ թաքուն արված նախշերը քիչ համարելով, նրանք մեր տան ճանապարհին նախշեցին այնտեղս այնպես, որ որևէ բացատրություն կամ լրացում անելը ավելորդ դարձավ։ Կարենը մյուս օրը իսկույն գլխի ընկավ, թե ինչ էր տեղի ունեցել և, իմ սպասածին հակառակ, ոչ թե վրեժխնդրությամբ սեղմեց բռունցքները և այդ երկուսին խրտնեցրեց հավերի պես, այլ փոխեց իր տան ճանապարհը։ Այնուհետև ամեն օր նա ինձ ուղեկցում էր մինչև մեր փողոցի անկյունը, որտեղից արդեն կարող էի մի հարյուր մետր մենակ գնալ։ Հետո սպասում էր, մինչև ես անցնեի մեր ցանկապատի դռնից ներս ու ձեռքով ցտեսություն անեի։

Այդպես ամեն օր դասերից հետո ես տուն էի հասնում և պատուհանից նայում, թե ինչպես էր Կարենը հեռանում մեր փողոցով։ Ես նորից ու նորից մտածում էի, որ նա աշխարհում իմ ամենամտերիմ ընկերն է, որ եթե հանկարծ նրան մի վտանգ սպառնա, ես պատրաստ կլինեմ նետվելու կրակի ու ջրի մեջ, նույնն էլ նա կանի ինձ համար։

Ես հաճախ էի հիվանդանում և դարձյալ հիվանդացա։ Բայց այս անգամ կոկորդս սովորականից ուժեղ էր ցավում, նշագեղձերս ուռել էին և չէի կարողանում խոսել։ Հայտնվեց ծանոթ բժիշկը, ամեն անգամվա հանդիմանական հայացքով, որ մոտավորապես նշանակում էր՝ «նորի՞ց քեզ լավ չես պահել», բայց այս անգամվա հանդիմանանքն էլ ուրիշ էր։ Այս անգամ նա խոսեց այնպես հանգիստ, ասես նախորդ անգամվա ասածներին ուղղակի ավելացնում էր մի բան, որ շատ կարևոր էր ինձ համար։

— Պետք է հիվանդանոցում պառկես։

Ես սարսափում էի հենց միայն հիվանդանոց բառից, ուր մնաց այնտեղ պառկելուց։

— Դու պետք է ուժեղ տղա դառնաս, մեծանաս, որպեսզի քեզ ոչ թե Լևոնիկ ասեն, այլ ինչպես որ պետք է՝ Լևո՛ն...— բժիշկը այնպես ամուր հրընչեցրեց իմ անունը և այնպես մտերմորեն գրկեց ուսս, որ ինձ թվաց, թե նա իմ մտերիմ ընկերն է՝ Կարենը, որն այնպես ցանկանում էր, որ ես էլ իր կողքին իր նման ուժեղ ու համարձակ լինեի, որ մեզ վրա քշող չլիներ։ Ես միայն գլխի շարժումով համաձայնեցի, որովհետև շատ բան էի ուզում ասել, բայց խոսել չէի կարող։

Բժիշկը մայրիկին այնպես ներկայացրեց մեր համաձայնությունը, ասես մենք իրար հետ շատ կարևոր մի գաղտնիք էինք կիսել։

Այդպես ինձ տարան հիվանդանոց, և ես Կարենին չտեսա ուղիղ երկու շաբաթ։ Մայրիկը եկավ, ասաց, որ Կարենը երկու անգամ եկել է մեր տուն և հարցրել ինձ հայտնել, որ շուտով դասարանով տեսակցության են գալու։ Դասարանո՞վ, մե՞ր դասարանով։ Այս միտքը գլխիցս դուրս չէր գալիս անգամ այն պահին, երբ ճակատին կլոր հայելի ամրացրած սիրունատես բըժըշկուհին վիրահատման մկրատով կտրում էր նշագեղձերս և ես ցավը զըսպելու համար համառորեն մտածում էի, որ մեր դասարանում էլ իմ բացակայության ժամանակ նման մի վիրահատություն է տեղի ունեցել, թե չէ այդ ինչպե՞ս պատահեց, որ... ամբողջ դասարանով։ Հետո հասկացա, որ այդ միտքը ինձ հրճվանք էր պատճառում

և հանգստացնում ցավերը: Այդպես եվ համառորեն լուռ մնացի մինչև վերջ, որովհետև հասկացա, որ սիրուն բժշկուհին ոչ թե ինչ-որ նշագեղձեր էր հանում, այլ հենց այն ամբողջ վախն ու անհամարձակությունը, որից վճռել էի խսպառ ազատվել:

— Լևոնը վիրահատության ժամանակ իրեն քաջ պահեց,— իմ ներկայությամբ մայրիկին ասաց նա, և ես անբացատրելի ուժ զգացի իմ մեջ:

Իսկ մայրիկն հայտնեց, որ իմ դասարանը եկել է ինձ տեսակցության: Քիչ մնաց ուրախությունից ճչայի, բայց նախ չէի կարող և հետո բառերն ավելորդ էին: Ես հասկացա, որ դասարանում տեղի է ունեցել կարևոր մի բան, ինչպիսին իմ կյանքում այս վիրահատությունն էր: Եվ այդ վիրահատության բժիշկը եղել է հենց Կարենը: Մայրիկն օգնեց, ես մի փոքր բարձրացա, նայեցի պատուհանից: Դրսում արև էր, առատ լույս, թռչունների խումբը համերաշխ ճռվողում էր ծառի կանաչ սաղարթների մեջ: Ռուբիկը, Մանվելը, Համլետը, Հասմիկը, Գայանեն, Գևորգը... ողջ դասարանը խմբվել էր ծառի մոտ, պատուհանիս տակ: Նրանք այնպես էին խմբվել Կարենի շուրջը, ասես նկարվելիս լինեին, ասես ես էի նրանց նկարելու: Հենց որ ձեռքով արեցի, նրանք կանչեցին.

— Լևո՜ն, կեցցե՛ս, Լևո՜ն...

Առաջին անգամ՝ Լևոն, ոչ թե Լեվոնիկ: Ես ձեռքով արեցի նրանց ետևում խմբված աղջիկներին, որոնք այնպես սեղմվել էին իրար, ասես վախենում էին նկարից դուրս մնալ: Հիմա ես տեսնում էի իմ բոլոր, բոլոր համադասարանցիներին... Նրանք բոլո՛րը, բոլո՛րը իմ ընկերներն էին:



# ՍԱՅԱԴՅԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ





Հարություն և Հենրիկ Սայադյան եղբայրները սովորում են Բյուրականի Հովհաննես Թումանյանի անվան միջնակարգ դպրոցում: Հարությունը 5-րդ դասարանում է, Հենրիկը՝ 3-րդ:

Երկուսն էլ ուսման գերազանցիկ են:

— Երեխաներ, աշխարհում ի՞նչ եք սիրում ամենից շատ,— հարցրինք մենք նրանց, երբ խմբագրությունում զրուցում էինք:

— Սիրում ենք նկարել:

— Իսկ շա՞տ եք նկարում:

Ավագ եղբայրը՝ Հարությունը մի պահ մտածելուց հետո պատասխանեց.

— Ես նկարել եմ 500—600, գուցե 1000 նկար: Դա շա՞տ է, թե քիչ...

— Իսկ դո՞ւ...— հարցրի Հենրիկին:

— Ես էլ եմ աշխատում Հարությունի նման, միասին նկարում ենք, երբ ազատ ժամանակ ենք ունենում:

— Իսկ ո՞ր առարկան եք շատ սիրում:

— Բոլորը...

— Իսկ ամենից-ամենից շա՞տ:

— Նկարչությունը:

— Ուրեմն, որ մեծանաք, նկարի՞չ պիտի դառնաք:

— Այո:

— Իսկ որտե՞ղ կուզենայիք ապրել, Երևանո՞ւմ, թե՞ Բյուրականում:

— Իհարկե, Բյուրականում,— միաբերան ասացին եղբայրները.— մեզ մոտ մեծ լեռներ, սարեր ու ձորեր կան, ծաղիկներ ու աղբյուրներ կան...

Հարություն և Հենրիկ Սայադյան եղբայրները քիչ է ասել, թե սիրում են նկարչությունը: Նրանք իրենց կյանքը առանց ներկ ու վրձինի չեն պատկերացնում...

*ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ*





# Ձկան ինչի՞ն են պետք ոտքերը

Վաղուց, շատ վաղուց, հարյուր միլիոնավոր տարիներ առաջ, երբ դեռ ցամաքում գազաններ չկային, իսկ օդում թռչուններ, ծովերն ու լճերը լիքն էին ձկներով:

Քաղցրահամ և ծովային ջրերում այն ժամանակ կային նաև այնպիսի ձկներ, որոնք կարողանում էին սողալ ծովի հատակով, ջրաբույսերի ցողունների և ճյուղերի վրայով: Եթե լճերում թթվածինը չէր բավականացնում, ձկները դուրս էին գալիս ջրի մակերես և լողափուչիկի օգնությամբ օդ շնչում: Իսկ այդ ձկների լողակները նման էին ժամանակակից վերգետնյա կենդանիների վերջույթներին:

Այն հեռավոր շոգ ժամանակներում ոչ մեծ լըճակներն ու ջրափոսերը ցամաքում էին և այդ ձկները սողալով ցամաքած տեղերից տեղափոխվում էին ջրառատ վայրերը: Կենդանի էին մնում նրանք, ում լողափուչիկն ու լողակներն ավելի զարգացած էին:

Հենց այդ ձկներն էլ երկար հազարամյակների ընթացքում կենդանական աշխարհը դուրս բերին ցամաք:

Համարում էին, որ այդ ձկները գոյատևել են մոտ հարյուր միլիոն տարի, ապա ոչնչացել են: Եվ հանկարծ, 1938 թվականին Հնդկական օվկիանոսում, Աֆրիկայի հարավային ափերի մոտ մի ձուկ բռնեցին շատ նման հին աշխարհի ձըկանը: Երկարությունը մեկուկես մետր էր, քաշը՝ հիսունինը կիլոգրամ: Ձըկանը լատիմերիա անվանեցին, ի պատիվ Իստ-Լոնդոնի թանգարանի աշխատակցուհու, որն էլ տեսել էր նրան տեղացի ձկնորսների մոտ:

Պարզվեց, որ հնագույն այդ ձկների սերունդները պահպանվել են մինչև մեր օրերը: Ճիշտ է, նըրանք շատ քիչ են: Գիտնականներին առայժմ հաջողվել է հայտնաբերել միայն քսան նման ձուկ: Լատիմերիաներն ապրում են Աֆրիկայի ու Մադագասկարի միջև ընկած ջրերի մեծ խորություններում, ըստ երևույթին՝ ստորջրյա ժայռերի վրա, սնվում խոր ջրերում ապրող ձկներով, թաթ-լողակներով սողում ժայռածերպերով:

«Ծերունի չորքոտանի» են կատակով ասում լատիմերիային. Նախ՝ լողակների, որոնք թաթերի նման են, ապա՝ պատկառելի տարիքի համար: ●

Վ. ՌԵԶՆԻԿՈՎԱ
կենսաբան. մանկավարժական գիտությունների թեկնածու





# ԿՈԿՈՅԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Թութակները մարդկանց սովորաբար գրավում են իրենց գունագեղ փետրավորումով և մարդկային խոսքը կրկնօրինակելու կարողությամբ: Բայց այդ թռչունները հետաքրքիր են նաև իրենց բնավորությամբ ու վարքագծով, որոնք ծանոթ են միայն նրանց հետ հաճախակի շփվող մարդկանց:

Փոքր հասակից ընտելացված կամ էլ երկար ժամանակ մենակ ապրած թութակները այլևս չեն հանդուրժում իրենց ցեղակիցներին, բայց դրա փոխարեն հաճախ բարեկամական փոխհարաբերություններ են հաստատում այլ թռչունների հետ: Մեր կենդանաբանական այգու թութակներից մեկը ընկերացել էր մի գորշ ճնճղուկի հետ, որը օրվա մեծ մասը անց էր կացնում իր բարեկամուհու վանդակում: Եթե թութակին այլ վանդակ էին տեղափոխում, ճնճղուկը անմիջապես գնում էր նրա ետևից: Նրանք միշտ քնում էին կողք-կողքի, իսկ երբ ճնճղուկը գնում էր իր գործերով, թութակը դադարում էր կեր ընդունել, փքված-նեղացած նստում էր մինչև բարեկամի վերադառ-

**ՀԱՆՆԱ ԳՈՒՅՎԻՆՍԿԱՆ Լեհաստանի Վրոցլավ քաղաքի կենդանաբանական այգում է աշխատում: Տարիներ շարունակ մոտիկից շփվելով կենդանիների հետ, Գույվինսկան հաճախ է հանդես գալիս հետաքրքրաշարժ հոդվածներով, որոնք Լեհաստանում մեծ ժողովրդականություն են վայելում: Տպագրում ենք նրա հոդվածներից մեկը՝ թութակների մասին:**

նալը: Թութակը աշխուժանում էր միայն այն ժամանակ, երբ լսում էր ծանոթ ծլվլոցը:

Միշտ չէ, որ թութակները հոգատար ծնողներ են: Կապտադեղնավուն արաները մի անգամ իրենց ձագերին կերակրել էին ավազով, և վերջինները, հասկանալի է, տեղնուտեղը սատկեցին: Մեկ ուրիշ անգամ, ընդհակառակը, նրանք այնպիսի ջանասիրությամբ էին կերակրում իրենց ճտերին, որ սրանք խեղդվեցին շատ ուտելուց:

Թութակները սուր լսողություն ունեն, հիանալի հիշողություն, իսկ ձայներ ընդօրինակելու նրանց կարողությունը բացառիկ է: Նրանք վերարտադրում են այն ձայները, որ լսել են վաղ հասակում, միաժամանակ հիանալի յուրացնում են նոր ձայներ: Երբեմն մենք լսում ենք տարօրինակ, անծանոթ երգեցողություն, անհասկանալի կանչեր, որոնք նրանք սովորել են հեռավոր կղզիների բնակիչներից:

Ես արդեն ընտելացել եմ, որ երեկոյան լռության մեջ հանկարծ դուռը ճռռա, լսվեն ինչ-որ մեկի մոտեցող ոտնաձայները, կամ էլ կաթիլքի ձայն: Երբեմն պարզ լսում եմ, որ դըռան ետևում քչփչում են կամ ինձ կանչում է ծանոթներիցս մեկը, որին արդեն մի քանի ամիս չեմ տեսել: Բայց հիմա ես արդեն գիտեմ, որ ոչինչ էլ չկա, դա թութակներից մի քանիսն են, իրենց սովորության համաձայն, խոսում քնի մեջ, գլուխները թևի տակ թաքցրած:

Թութակները սիրում են, որ իրենց տերը շարունակ իրենց կողքին լինի և զբաղվի միայն իրենցով: Եթե հանկարծ, աստված չանի, ի պատասխան նրանց որևէ կանչի չմոտենամ, այդ կանչը կշարունակվի առանց դադարի: Ամենափորձված միջոցը կերամանը ջուր տալն է: Ստիպված ես լինում մոտենալ հավաքել թափված կերը, կերամանը նորից լցնել: Եվ քանի որ թութակները ընդօրինակում են նաև իրար, բավական է մեկնումեկը ջուր տա կերամանը, մյուսներն էլ նույնն են անում:

Թութակների վանդակները հարկավոր է այնպես տեղադրել, որ հնարավորություն ունենան միշտ տեսնելու իրենց տիրոջը և հետևել նրա գործողություններին: Ձանձրույթից թութակները վատ սովորություններ են ձեռք բերում՝ գլուխկոնծի են տալիս, իրենք իրենց փետրահան անում, կտուցով պոկում սեփական ճանկերը: Իսկ այդ ամենից ետ վարժեցնելը շատ դժվար է: Նման բաներ թութակները սովորում են նաև իրարից: Բավական է փետրաթափ մի թութակի վանդակը տեղավորես ուրիշ թութակների վանդակների կողքին, որոշ ժամանակ անց, սրանք նույնպես սկսում են իրենց փետրահան անել: Եթե այդ պահին հանկարծ բարկանաս թութակի վրա, նա կսկսի արդեն դիտավորյալ մեկ առ մեկ դուրս քաշել իր փետուրները, որպեսզի գրավի ձեր ուշադրությունը:

Առավել դժվար է անտարբեր մնալ ու չմիջամտել, երբ լսում ես, թե թութակն ինչպես է իր ճանկերը կոտրում: Իսկ նրանք սատանի նման խորամանկ են: Գտել են թույլ տեղը և հաճախ պարզապես նստում են բոլորո-

վին անշարժ, և միայն կոտրվող ճանկերի բնորոշ խշրտոցն է լսվում: Իսկ եթե նկատում են, որ տեսնում ես իրենց, ապա պարզապես կտուցը մոտեցնում են ճանկերին, ձևացնելով, թե կոտրում են:

Ավելի ընտելացված թռչունները սիրում են, որ իրենց շոյեն, իրենց գլուխը քորեն: Ժակո թութակներից մեկը նույնիսկ ինքն էր քորում իր գլուխը՝ խնձորի կամ գազարի կտորով, ճանկով բռնած: Ի միջի այլոց, թութակները միակ թռչուններն են, որ կերը դեպի կտուց են տանում ոտքով:

Մեր կենդանաբանական այգու ամենագեղեցիկ թութակը մոլլուկյան կակադուն է: Դա խոշոր, վարդագույն փետրավորումով թռչուն է: Գլխի փետուրները կարմրանարնջագույն են, թևերն ու պոչի ներքևի մասը դեղնավուն, իսկ խաժ աչքերի շուրջը երկնագույն շրջանակներ կան: Նա շատ հըստակ արտասանում է իր անունը: Կոկոն կարող է խոսել հոլանդերեն, ձեր խնդրանքով քորել գլուխը, երգում է, սուլում, ծիծաղում և հաչում: Կարողանում է ընդօրինակել ջրի կաթկթոցը, բաժակների չխկոցը, բացվող շշի դուրս թռչող խցանի ձայնը: Վատ բառեր, ճիշտ է, չի ասում, բայց ճշտորեն վերարտադրում է կռվող ու հայհոյող մարդկանց բարձրացրած աղմուկը: Բարեբախտաբար Կոկոն հազվադեպ է խոսում իր բնական, անտանելի ճռճըռան ձայնով: Կոկոյի բնավորությունը մեղմ է, վերաբերմունքը քնքուշ, մեծ հաճույքով նստում է ուսիս և հմայված ինձ աչքերիս նայում:

Կոկոյին Ամստերդամի կենդանաբանական այգուն էր հանձնել մի տիկին, որը նրան պահելու հնարավորություն չուներ: Այն ժամանակ ես այդ կենդանաբանական այգում պրակտիկա էի անցնում և սկսեցի ամեն օր այցելել Կոկոյին: Նա նստել էր մռայլ, ուռած-փքված և ոչինչ չէր ուտում: Օրօրի հյուծվում էր ու թուլանում: Որոշեցի նրան իմ սենյակը տանել: Այգու ծառայողը ինձ համար հատուկ ձեռնոցներ պատրաստեց, զգուշացնելով նրա հզոր կտուցից: Խոշոր թութակի կտուցն այնքան հզոր է, որ նա կարող է կտրել դեն գցել հասուն մարդու մատը: Բայց երբ Կոկոյի վանդակը բացեցի, նա անմիջապես նստեց ուսիս և սկսեց գլուխը քնքշորեն այտիս քսել: Որպեսզի չվախեցնեմ թռչունին, ստիպված նրան այդպես ուսիս դրած տուն եկա: Տանը, տեսնելով կատվին, Կոկոն ուռեցրեց փետուրները և այնպիսի զարհուրելի քրքիջ արձակեց, որ կատվի հետքը չմնաց:

Տանը Կոկոն իրեն հանգիստ էր պահում, նույնիսկ սովորեց քնել նույն ժամերին, ինչ ես: Բայց բավական էր ես քնի մեջ շարժվեի, նա վայրկենապես աշխուժանում էր, դուրս գալիս վանդակից և կողքիս նստում: Ես Կոկոյին առանց վանդակի էի այգի տանում, նա ինձ հետ լինում էր նույնիսկ անտառում և ոչ մի անգամ փախչելու փորձ չարեց: Արդեն այն ժամանակ հայտնի էր, որ Կոկոն ինձ հետ պիտի Լեհաստան գնա:

Որպեսզի թռչունը հանգիստ ու ապահով զգա, հետո վերցրել էի նրա վանդակը: Ցավոք, դա քիչ օգնեց: Կոկոն սկսեց ներվայնանալ դեռևս Ամստերդամի օդանավակայանում և սկըսեց կատաղորեն պոկել իր փետուրները, այնպես որ մենք հայտնվեցինք սպիտակ բմբուլի ամպի մեջ: Նրա հըզոր ոտքերն ու կապտավուն մաշկով պատված փորը շատ տգեղ տեսք ունեին: Ոմանք ասում էին, որ Կոկոն նման է փետրաթափ հավի: Մի քանի ամիս անց փետուրների մի մասը աճեց: Եվ ես հույսս չեմ կտրում, որ ժամանակի ընթացքում Կոկոն նորից գեղեցիկ թութակ կդառնա, եթե, իհարկե, իրեն փետրահան անելու նոր առիթ չներկայանա նրան:

## ԶԱԽՈՐԴ ՈՒՍԱՆՈՂԸ

Մի ուսանող երրորդ անգամ չկարողացավ մարդակազմության քննություն հանձնել ռուս նշանավո՛ր բժիշկ Բոտկինին:

Զախորդ ուսանողի ընկերները քննություն ընդունողին ասացին, որ ուսանողը սպառնում է դանակ խրել իր սիրտը, անձնասպան լինել:

Բոտկինը հանգստացրեց նրանց.

— Ձեր ընկերը մարդակազմություն չգիտի, սրտի տեղը չի գտնի:



## ԷԴԻՍՈՆԻ ՑԱՆԿԱՊԱՏԻ ԴՌՆԱԿԸ



Էդիսոնի այգու ցանկապատի դռնակը դժվարությամբ էր բացվում: Մի անգամ հյուրերից մեկն ասաց.

— Զարմանում եմ, թե ձեզ նման հանճարը ինչպե՞ս չի կարողանում մի կատարյալ դռնակ սարքել իր այգու համար:

— Դռնակը արված է նախագծի համաձայն,— պատասխանում է Էդիսոնը,— այն միացված է տնային ջրմուղի խողովակին: Ամեն մի դուռը բացող ջրամբարի մեջ է մղում տասը լիտր ջուր:

## ՃԱՄՊՐՈՒԿԱԳՈՐԾ ՎԱՐՊԵՏԸ

Դ. Ի. Մենդելեևը սիրում էր կազմարարություն և նույնիսկ ճամպրուկ էր պատրաստում: Մի անգամ երբ նա ճամպրուկ պատրաստելու համար անհրաժեշտ նյութեր գնեց ու դուրս եկավ խանութից, վաճառողին հարցրին, թե ո՞վ է նա:

— Մի՞թե չգիտեք,— զարմացավ վաճառողը,— բոլորը ճանաչում են նրան: Ճամպրուկի հայտնի վարպետ Մենդելեևն է:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15:
Հեռախոսներ՝ 56-82-72, 58-08-88, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 9 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980

| | |
|---|---|
| Մ. ՈՍԿԱՆՅԱՆ — Ուսուցչուհին | 3 |
| Այս ուսումնական տարում | 3 |
| Ամենից առաջ՝ քաղաքացի | 5 |
| Մ. ՄԿՐՏՉՅԱՆ — Հողի կանչը | 6 |
| Չկան էտ մնացողներ | 6 |
| Ա. ԴԱՎԹՅԱՆ — «Ծաղկեփունջ մի աղջկա» | 7 |
| Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ — Զրույցներ լեզվի մասին | 8 |
| Գ. ՏՅՈՒՏՅՈՒՆՆԻԿ — Կլիմկո | 10 |
| Է. ՄԻԼԻՏՈՆՅԱՆ — Առվի ձայնով | 13 |
| Ա. ՊԱՐՍԱՄՅԱՆ — Աշուն | 13 |
| Գ. ՄԱԶՄԱՆՅԱՆ — Լուսաբաց | 13 |
| Նոր շալվարը | 19 |
| Ս. ԱՂԻՆՅԱՆ — Նախ՝ համերաշխություն | 21 |
| Է. ԿԱԼՆԵ — Մեծ Դոգի փորձը | 22 |
| Ի՞նչ արժե ընտրողը | 23 |
| Վ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ — Խաբարբզանը | 24 |
| Հմուտ ձեռքեր — «Դարբին» | 24 |
| Վ. ՎԱՐԴԱՆ — Մեր տատերը | 26 |
| Գ. ԲԱԲԱՅԱՆ — Որոտան | 28 |
| Բ. ԱԼԵՔՅԱՆ — Աշխարհի չափ սիրելի | 28 |
| Ս. ՍԱՐԳՍՅԱՆ — Ինչպես դառնալ կինոդերասան | 28 |
| Ք. ՊԻՆՈ — Լեգենդ կեղծամի մասին | 31 |
| Գիտե՞ք որ | 33 |
| Մեր հյուրը | 34 |
| Ա. ԴԵՎԿԱՆՑ — Թաց երեսսրբիչի գաղտնիքը | 36 |
| Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ — Իմ մտերիմ ընկերը | 37 |
| Կ. ՍՄԲԱՏՅԱՆ — Սայադյան եղբայրները | 40 |
| Ձկան ինչի՞ն են պետք ոտքերը | 41 |
| Հ. ԳՈՒՑՎԻՆՍԿԱ — Կոկոյի արկածները | 42 |
| Ժպիտներ | 45 |
| Ժամանց | 47 |

Շապիկի առաջին էջը՝ Հարություն Համբարձումյանի

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Վ.Ֆ 04826: Պատվեր 1209: Տպաքանակ 51044: Տպ. 3 մամ.: Թուղթ՝ 70×100 1/16: Հանձնված է արտադրության 22/VII 1980 թ.: Ստորագրված է տպագրության 10/IX 1980 թ.:

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:






# ԽԱՉ-
# ԲԱՌ

### ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

1. Տարվա ամիսներից մեկը: 3. Թիվ: 4. Մեքենային ուղղություն տվող մաս: 6. Լիճ ՌՍՖՍՀ-ում: 7. Հաճարազգիների ընտանիքի ծառապտուղ: 8. Գծագրական պիտույք: 10. Բույս (սագախոտ): 13. Վարդազգիների ընտանիքի ծառապտուղ: 14. Թռչուն: 18. Ջրկ-նորմնական իր: 22. Գործվածքեղենի հումք: 24. Կրծողների դասի կենդանի: 25. Գետի վտակ ՍՍՀՄ-ում: 26. Լեռ Օսեթական ԻՍՍՀ-ում: 27. Ռուս բանաստեղծ: 28. Տղայի հայկական անուն: 30. Երկրի բուսածածկույթի հիմնական տեսակ: 31. Քլորոֆիլից զուրկ ստորակարգ բույսերի դասի բույս: 33. Քաղաք ՌՍՖՍՀ-ում: 37. Մետաքսաթելի հումք: 39. Պահածոյացված լոլիկի մածուկ: 40. Գեղարվեստական ստեղծագործության կառուցման հիմնական տեսակներից մեկը: 42. Ոտքի նեղ ճանապարհ: 43. Համամիութենական պիոներական ճամբար: 44. Շրջան Հայաստանում: 45. Երկրաչափական մարմին: 46. Բնակելի տարածությունից: 47. Հայ բանաստեղծ:

### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Շուշանազգիների ընտանքի սոխուկավոր բույս: 2. Դռան փականք: 3. Սողուն: 5. Հացազգիների ընտանիքի բույս: 7. Տրորանսպորտի միջոց մինչև հեղափոխությունը: 9. Կավե աման: 11. Գետ Արևմտյան Հայաստանում: 12. Դեկորատիվ ծառատեսակ: 13. Կրաքարի և կավճի թրծումից ու վերամշակումից ստացված արտադրանք: 15. Թռչուն: 16. Ծաղիկ: 17. Փաթաթվող բույսերի ցեղ: 18. Թատերական արվեստի տեսակ: 19. Երաժշտական գործիք: 20. Ծաղիկ: 21. Առևտրական պարագա: 22. Քաղաք Բելոռուսիայում: 23. Պետություն Եվրոպայում: 29. Քիմիական տարր պարբերական աղյուսակում: 30. Հացազգիների ընտանիքի միամյա բույս: 32. Միրգ: 34. Անապատային կենդանի: 35. Արյունատար անոթ մարդու օրգանիզմում: 36. Քաղաք ՌՍՖՍՀ-ում: 38. Միջատ: 39. Քիմիական տարր պարբերական աղյուսակում: 40. Մերձարևադարձային պտուղ: 41. Անապատային բույս:

Կազմեց՝ ՄԱՅԻՍ ՄԻՆԱՍՅԱՆԸ

